1917 № 7— Փետրուարի 19 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասաքաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавоберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԿՈՎԿԱՍԻ ԶԵՄՍՏՎՕՆ

*Կովկասի ազգաբնակութեան համար ներկայումս ամենալուրջ և ուշագրաւ խնդիրներից մէկը զեմստվօն է, որի նախագիծը քննւում է Պետրոգրադում նախարարների ներկայացուցիչներից կազմած յանձնաժողովում, նախագահութեամբ Կովկասի Փոխարքայի ներկայացուցիչ սենատոր Միլիւտինի։*

*Յանձնաժողովի քննութիւնից յետոյ նախագիծը, ըստ օրինական կարգի, կը ներկայացուի նախարարների խորհրդին և ապա՝ Պետական Դումային, ուր նորից քննութեան կենթարկուի նախ Դումայի յատուկ մասնաժողովում, ապա և Դումայում։*

*Այն արտասովոր արագութիւնը, որով կատարւում է նախնական աշխատանքը և որն անշուշտ կարտայայտուի աշխատանքի որակի վրայ, պարզ ցոյց է տալիս, որ կառավարութիւնը ցանկանում է շուտափոյթ նախագիծը օրէնք դարձնել և մտցնել կեանքի մէջ Կովկասում։*

*Ողջունելի է, որ կառավարութիւնը վերցրել է իր վրայ մի այսպիսի գեղեցիկ գաղափարի իրագործման նախաձեռնութիւնը, որի միջոցով ժողովուրդն ազատւում է իւր ներքին կեանքում՝ անտեսական, կրթական և կուլտուրական հին ոստիկանական (պոլիցիական) վարչական ռէժիմից և ստանում է որոշ ինքնավարութիւն։*

*Ուրախալի է, որ միջոցներ են ձեռք առնւում նոր հասարակական հիմնարկութիւններ մտցնելու մեր երկրում և այն էլ շուտափոյթ։*

*Սակայն այդ բոլորը գործի ձևական կողմն է.*

դրանով չէ սպառւում խնդրի էական մասը։

Իսկ խնդրի էութիւնը հետեւեալն է. ինչպէս է կազմած զեմստվոյի նախագիծը. ինչ կարող է տալ կառավարութեան ծրագրած զեմստվօն Կովկասի ազգաբնակութեան առհասարակ և մեզ, հայերիս, մասնաւորապէս։

Դիմելով հարցի լուծման այդ տեսակէտից և ի նկատի ունենալով կառավարութեան կազմած նախագիծը, որը, ի դէպ ասած, արդէն ընդունուած պէտք է համարել Պետերբուրգի միջվարչական յանձնաժողովի կողմից, ինչպէս այդ երեւում է հեռագրական տեղեկութիւններից, մենք գալիս ենք շատ տխուր եզրակացութիւնների։

Ծրագրուած զեմստվօն, դժբաղդաբար, չէ բուժելու Կովկասի հին ցաւերը, այլ, ընդհակառակը, գուցէ բանայ նոր խոցեր։

Այդ զեմստվօն դրուած է այնպիսի հիմքերի վրայ, որ ոչ մի ուղղումն չի կարող փրկել նրան տապալումից, ոչ մի մասնակի փոփոխութիւն չի կարող չոկել նրա չափազանց աչք ծակող պակասութիւնները։ Առանց հիմնական փոփոխութիւնների այդ տեսակ զեմստվօն կենսունակ դարձնել անհնարին է։ Եւ այդ շատ հասկանալի կը լինի, եթէ ի նկատի առնենք, թէ ինչ է ծառայել հիմք Կովկասի զեմստվոյին։ Կովկասի զեմստվօն կազմուած է Ռուսաստանում ներկայումս գործադրուող 1890 թուականի այն օրէնսդրութեան հիմ.ան վրայ, որը զուրկ է լայն ժողովրդական սկզբունքներից, որի հիմնարկութիւնների մէջ իշխող տարրը ազնուականութիւնն է և առհասարակ խոշոր կալուածատէրերը, ուստի և վաղուց դատապարտուած է թէ առաջադէմ հասարակական կարծիքի և թէ ազատամիտ մամուլի կողմից, և որի վախճանը սպասւում է օրէցօր։

Այդ հակաժողովրդական զեմստվոյի օրէնսդրութիւնը հաւանականօրէն մօտ ապագայում կը փոխուի և տեղ կը տայ նոր օրէնսդրութեան լայն ժողովրդական պահանջներին համապատասխան ու դեմոկրատիկ սկզբունքների վրայ հաստատուած։ Զեմստվոյական գործը դուրս կը գայ, կազատուի ազնուականների և մեծ կալուածատէրերի նեղ և խեղդող շրջանից ու կը դառնայ իսկական ժողովրդական գործ։

Եթէ 1890 թ. օրէնսդրութիւնը անընդհատ մինչև օրս էլ արդարացի բողոքներ է յարուցել ռուս ժողովրդի լայն խաւերի կողմից, չնայելով որ Ռուսաստանում կայ աշխարհագրական, ազգագրական, տնտեսական և կուլտուրական միատեսակութիւն, ապա դժուար չէ երեւակայել թէ Կովկասի զեմստվօն, որը կրկնողութիւն է Ռուսաստանի զեմստվոյի, ինչ աններդաշնակութիւն կը մտցնի մեր երկրում, ուր ապրում են բազմալեզու և բազմացեղ ժողովուրդներ և ուր այդ ժողովուրդների մէջ մեծ տարբերութիւններ կան տնտեսական, կուլտուրական և հասկացողութիւնների կողմից։

Եթէ զեմստվօն կոչուած է բարձրացնելու երկրի տնտեսական և կուլտուրական կեանքը, եթէ նրա գլխաւոր նպատակներից մէկն է ի մի կապել մի պետութեան մէջ ապրող ազգերը և ժողովուրդի զանազան խաւերը յանուն ընդհանուր շահերի և բարօրութեան, ուրեմն ինչպէս կարելի է իշխանութեան ղեկը յանձնել այն փոքրաթիւ տարրերին, որոնք բաղդի բերմամբ անուանւում են կալուածատէր ազնուականներ կամ թէ խոշոր անշարժ կայքի տէրեր։

Միթէ կարելի է մտցնել երկրում մի այնպիսի զեմստվօ, որը կարող է առաջ բերել ժողովրդի մեծամասնութեան, այն է՝ գիւղացութեան և առհասարակ ներքին խաւերի դժգոհութիւնը, կամ մի ամբողջ ազգի, ինչպէս հայոց ազգն է։ Միանգամայն իրաւացի է հայի վրդովմունքը և բողոքը, քանի որ իրաւազուրկ է լինում ոչ թէ միայն Գանձակի և միւս նահանգներում, ուր նա փոքրամասնութիւն էկազմում, այլ մինչև անգամ Երեւանի նահանգում, որ տեղ նա ազգաբնակութեան մեծամասնութիւնն է կազմում։

Անչափ ցանկալի է, որ Կովկասում ապրող ազգերի մէջ ստեղծուի համերաշխութիւն, խաղաղութիւն, իրաւունքների փոխադարձ յարգանք, մի խօսքով ստեղծուի մի այնպիսի դրութիւն, որ մէկը միւսին իրաւունք ունենայ ասելու. «ապրիր, բայց մի խանգարիր ինձ եւս ապրելու»։ Բայց այդ տեսակ դրութիւն կարող են ստեղծել և պէտք է ստեղծեն հասարակական հիմնարկութիւնները, մանաւանդ զեմստվօն։ Սակայն Կովկասի զեմստվօն, ինչպէս այժմս է կազմուած, չի կարող իրագործել այդ նպատակը, այլ հաւանօրէն հակառակ հետեւանքներ կունենայ, քանի որ միլլիոնաւոր մարդիկ չեն կարող մասնակցել, որովհետև նրանց տուրքը չէ համապատասխանում նախագծով սահմանուած բարձր չափին. քանի որ ժողովուրդի մի խոշոր դասակարգը, ինչպէս են առեւտրականներ, արդիւնաբերողներ, կը մնան զեմստվոյից դուրս, եթէ չունեն անշարժ կայք, քանի որ նախագծով ազնուականների և խոշոր կալուածատէրերի դասակարգը, թուով աննշան, անհամեմատ աւելի շատ ձայներ է ունենալու, քան թէ հազարաւոր գիւղական համայնքները, և առաջինների իրաւունքները ապահովեցնելու համար նրանց իրաւունք է տրւում, որ իրենց ընտրութիւնը կատարեն առանձին. վերջապէս ծրագրուած Կովկասի զեմստվօն չի կարող բացասական հետեւանքներ չունենալ, քանի որ ամբողջ հայ ժողովուրդը և ոչ մի նահանգում չի կարողանալու ունենալ իւր ներկայացուցչութիւնը։

Որպէս զի Կովկասեան զեմստվօն կարողանայ արդարացնել իւր նշանակութիւնը ու ծառայի ժողովրդի շահերին, նրա այժմեան նախագիծը պէտք է ենթարկուի հիմնական փոփոխութիւնների, ի նկատի առնելով հետեւեալ չորս սկզբունքները.

Առաջին՝ որ ապահովուած լինի ժողովրդի տուրք տուող բոլոր խաւերի մասնակցելու իրաւունքը գեմստվօյում։

Երկրորդ՝ որ ապահովուած լինի նոյն իրաւունքը ամէն մի ազգի համար.

Երրորդ՝ որ ամէն մի գեմստվօյական շրջանի սահմանները այնպէս գծուած լինեն, որ տնտեսութիւնը և կուլտուրան մօտաւորապէս միակերպ լինին, որպէս զի շահերի ընդհարումն առաջ չը գայ, և

Չորրորդ՝ ընտրողների մէջ դասակարգային բաժանմունքներ չլինեն։ Հետևելով առաջին սկզբունքին, հարկաւոր է գեմստվօյում մասնակցելու համար նշանակել, անկախ անշարժ կայքից, չնչին տուրք, որը մատչելի լինի եթէ ոչ բոլորին, գէթ ժողովրդի խոշոր մեծամասնութեան։ Երկրորդ սկզբունքը թելադրում է նահանգների սահմանները որոշ փոփոխութիւնների ենթարկել, միացնելով Գանձակի և Թիֆլիսի լեռնային մասերը հայ ազգաբնակչութեամբ Երևանի նահանգին։ Երրորդ սկզբունքի իմաստով նպատակայարմար է տնտեսական և կուլտուրական միակերպութեան տեսակէտից գեմստվօյի առաջին շրջան համարել գիւղական վարչութեան շրջանը, որը բաղկացած է լինում մի շարք գիւղերից, ու այդ կը լինի այն, որ անուանւում է գեմստվօյական մանր միութիւններ (мелкая земская единица)։ Վերջապէս, չորրորդ ղեկավարող սկզբունքը այն է՝ որ ձայնաւորների ընտրութիւնը կատարուի մի ժողովում առանց դասակարգերի բաժանելու, որ հասկանալի կըլինի և բնական, եթէ ընդունուի տուրքի նուազագոյն չափը։

Ժամանակ է, որ Կովկասն էլ արժանանայ գեմստվօյի, միայն այնպիսի գեմստվօյի, որը ծառայի երկրի վերածնութեան և ստեղծի համերաշխութիւն ազգաբնակութեանց, որը բոլոր ազգերին տայ իրաւունք համահաւասար չափով ազատ վարելու իր տնտեսական և կուլտուրական գործերը, յարգելով իր շրջանի միւս ազգերի փոքրամասնութեան իրաւունքները, և, վերջապէս, որի համար խորթ չլինի ժողովուրդի և ոչ մի խաւը։

Ահա թէ ինչպիսի գեմստվօ կը ցանկանայինք Կովկասին։

Ս. Յարութիւնեանց

---

# Ներքին տեսութիւն

## ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒՆ՝ ՊԵՏԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ

Վերջերս տեղական մամուլի էջերում մի քանի անգամ հարց բարձրացաւ մայրենի լեզուն պետական դպրոցներում պարտաւորիչ դարձնելու մասին։

Մամուլի ձայնը արձագանգ գտաւ ժողովրդական շրջաններում և ծնողական ժողովներ գումարուեցին այդ կենսական խնդրի շուրջը։

Տխուր իրականութիւնը ցոյց է տալիս, որ երկար տարիներից ի վեր Կովկասի ժողովրդների մանուկ սերունդը կրթուել ու դաստիարակուել է պետական դպրոցներում՝ ենթակայ լինելով աստիճանական օտարացման։ Այդ մասին տեղական մամուլը, ազգութիւնների հանրային կարծիքը մնացել էր գրեթէ ականատեսի դերում, առանց վճռական քայլեր անելու. իսկ մտաւորականութիւնը իր անտարբերութեամբ ոչ միայն ահագին զարկ է տուել այդ օտարացնող միջավայրին, որ այսօր վարակում է ամբողջ Անդկովկասը և մանաւանդ նրա կենտրոնական վայրը։ Ասում ենք ոչ միայն ահագին զարկ է տուել, այլ և ինքն էլ կամաց կամաց կատարած իրողութեան առջև գըտնուելով, ինքն ևս խորթացել ու օտարացել է։

Ներկայ համաշխարհային պատերազմի ընթացքում միայն, երբ աւելի ու աւելի է շեշտւում ազգային ոգին և աւելի է խօսւում փոքր ազգութիւնների ազատագրութեան մասին, փոքր ազգութիւնների մտաւորականութեան լաւագոյն մասը սկսել է զգալ իր ուսերին ծանրացած պատասխանատուութիւնը։

Քանի որ այժմ հարցը դրուել է հրապարակի վրայ և ամէն կողմից լսւում են այդ ուղղութեամբ առաջարկներ ու կարծիքներ, ապա ուրեմն պէտք է տաք-տաք ծեծել այդ խնդիրը և եզրակացութեան յանգել։

Ամենից աւելի այդ խնդրում ձայն և իրաւունք ունին աշակերտների ծնողները և ազգականները։ Նրանք պէտք է պահանջեն իրենց զաւակների դաստիարակութեան գործը ստանձնողներից, որ ուշադրութիւն դարձնեն մայրենի լեզուի, պատմութեան և գրականութեան վրայ. Նրանք պէտք է պահանջեն, որ մայրենի լեզուն և նրա յարակից առարկաները պարտադիր դառնան պետական դպրոցներում, որ մայրենի լեզուի մասին այնքան հոգ տարուի, որքան որ այդ անում են միւս առարկաների վերաբերմամբ։

Ինչպէս է որ օտար լեզուները, ինչպէս օրինակ գերմաներէն, ֆրանսերէն, անգլիերէն պարտադիր են դարձել պետական դպրոցներում, մինչդեռ տեղական, մայրենի լեզուն ոչ։ Կայ աւելի մեծ հակասութիւն և հասարակական չարիք, քան այս իրողութիւնը. մարդիկ իրենց ցաւը մոռացած ուրիշների դուռն են ածում։

Այդ տեսակ դաստիարակութիւնը ոչ միայն կարևորութիւն ունի մանկավարժական, այլև հենց պետական-ռուս լեզուն լաւ և հիմնաւոր կերպով սովորելու տեսակէտից։ Մայրենի լեզուն չը սովորող սերունդը, որ այսօր տեսնում ենք հրապարակի վրայ և մեծ զանգուած է կազմում առհասարակ, ոչ միայն անծանօթ է իր ազգի լեզուին, գրականութեան, պատմութեան, այլև թերուս է նաև հենց ռուս լեզուի առոգանութեան, արտասանութեան, ուր կրթուել ու սնուել է ինքը. բացի այդ՝ այդ սերունդը մի միջնորդ է, մի երերուն ու ստուերի մէջ խարխափող, թոյլ զանգուած է, նրա հոգու առջև փակ է բուն ազգային առողջ մտածողութիւնը, փակ է նաև ռուս ժողովրդի հոգեբանութեան և մանաւանդ զգացողութեան այն մասը, որ ցեղային բնոյթ ունի։ Պետական լեզուն հիմնապէս սովորելու և ըմբռնելու համար ամենից առաջ պէտք է սովորել մայրենի լեզուն և եթէ վերջինս պարտադիր դարձուի դպրոցներում, պետական լեզուն ոչ թէ չի վնասուի, այլ ընդհակառակն աւելի պինդ հիմնաւորուի։

Հարկ կայ պնդելու, որ մայրենի լեզուով սնած սերունդը աւելի պիտանի և օգտակար կարող է լինել պետութեան և հասարակութեան։ Չէ՞ որ որևէ երկրի և ժողովրդի հաւաքական առողջութիւնը, հաւաքական բարձրութիւնը ամենամեծ չափով կախում ունի այդ ժողովուրդի բաղկացուցիչ տարրերի-անհատների առողջ կրթութիւնից. իսկ առողջ կրթութիւնը հիմնուած է միայն ազգային դաստիարակութեան վրայ, որի վրայ կառուցուած օտար շէնքը կարող է միայն հաստատուն և դիմացկուն լինել։

Ծնողների միջամտութիւնը միայն բաւական չէ. միջամտութիւնը պէտք է լինի նաև աւելի բարձր և հեղինակաւոր կող

կերպութիւնների կողմից։ Մանր ազգերի հաւաքական ձայնը պէտք է գործօն մասնակցութիւն ու կշիռ ունենայ այս խիստ կարևոր և հրատապ խնդրի լուծման համար։

Ծնողական յանձնաժողովները կամ պատասխանատու մարմինները ոչ միայն ձայն պէտք է բարձրացնեն մայրենի լեզուի պարտադիր դարձնելու համար, այլ և պէտք է մտածեն ու հսկեն նրա աւանդման մեթոդի և ինչ տեսակ մանկավարժների ձեռքում գտնուելու մասին։

Ոչ միայն դպրոցական իշխանութեան վերաբերմունքն կարևորը լեզուի մասին, այլ և աւանդելու մեթոդն էլ մեծ արժէք ունի։ Բայց որքան ծանօթ ենք, պետական դպրոցներում մայրենի լեզուի առարկաները (մանաւանդ գաւառներում) յանձնուել են այնպիսի մարդկանց, որոնք կամ մանկավարժական պատրաստութիւն չունին կամ մայրենի լեզուին ու գրականութեան անծանօթ են և կամ թէ շահագրգռութիւն չունին այդ առարկայի հանդէպ։

Ի հարկէ դպրոցական տիրապետող կարգը, դպրոցի ղեկավարները իրենց անտարբեր և բացասական վերաբերմունքով թուլացնում են մայրենի լեզուի դասատուների եռանդը, բայց իրենք դասատուներն էլ, եթէ բարեխիղճ և պարտաճանաչ լինեն, եթէ խորապէս տոգորուած լինեն ազգային գիտակցութեամբ, մեծ գործ կարող են կատարել հենց այդ աննպաստ միջավայրում։

Նրանք կարող են սէր և համակրանք ստեղծել աշակերտութեան սրտում հանդէպ առարկայի, դարձնելով այն կենդանի և հետաքրքիր, համեմելով ցեղային գրականութեան գողտրիկ արգասիքների ու գրուածքների հետ։

Չենք ժխտում ի հարկէ այն ճշմարտութիւնը, որ այդ ուսուցիչների ընտրութիւնը կատարւում է շատ փութկոտ կերպով և պաշտօնի են կանչւում այնպիսի մարդիկ, որոնք անարժան լինելով արդարացնում են դպրոցական վարչութիւնների վերաբերմունքը։

Ուրեմն նախ և առաջ պէտք կ բարեփոխել տիրապետող դրութիւնը, պարտաւորիչ դարձնել մայրենի լեզուի առարկաների դասաւանդութիւնը և ուշադրութիւն դարձնել այդ առարկաները դասաւանդող մանկավարժների ընտրութեան։

Պետական դպրոցներում մայրենի լեզուի առարկաների ուսուցումը պէտք է տարուի ուսումնական որոշ ծրագրի համապատասխան։ Ուսման ծրագրի մշակութիւնը պէտք է կատարուի հենց իրենց Կովկասի ազգերի փորձուած մանկավարժների ձեռքով. այդ ծրագիրը կարող է ուղեցոյց լինել ուսուցչին և աւելի դիւրացնել նրա աշխատանքը։

Այս բոլորի համար անհրաժեշտ է հիմնական աշխատանքներ սկսել, միայն ժողովներ կազմակերպելը բաւական չէ։

Ծնողների և տեղական մտաւորականութեան գլխաւոր պարտականութիւնն է գործօն միջոցների ձեռնարկել և պահանջել հիմնական բարեփոխումը այդ հողի վրայ։

Պիտի կարողանան Կովկասի փոքր ազգութիւնները իրենց համախմբուելով, հանրային կարծիքով, առաջաւոր մտաւորականութեամբ և ծնողական ժողովներով առաջ տանել իրենց կամքը լսեցնել ու յարգել տալ իրենց արդարացի պահանջները։

Յուսանք և սպասենք։

Ա. Արծիւեան

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Գ. Ի. և Մ. Ի. Եղիգարեաններից հանգ. Ս. Պօղոսեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ Ը-թեանս ճաշարանին 25 ռ.

Շնորհակալութեամբ ստացուած են 100-ական ռ. հետևեալ անձերից, որոնք գրուել են Ընկ. մշտական անդամ և ստացել մրցագրեր. Կոստանդին Սողոմոնեան Վարձելեան, Տիգրան Յարութիւնեան Եսայեան, Խաչատուր Գէորգեան Ամիրաղեան, Սարգիս Թադէոսեան Խարազանեան, Արտաշէս Արսէնեան Միրզոյեան, Կարապետ Մելքումեան Աղայեան և Հախվերդի Բոբաջանեան Աւագեանց։

---

Պ. Մկրտիչ Վարդանեան Պօղոսեանից հանգ. Սոնիկ Պօղոսեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ Կարնի հայերի 50 ռ., ուղարկելու Զաւէն վարդապետի անօրէնութեան,

---

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է հանգուցեալ Սոֆիա Ռոմանեան Խիթարեանի որդիներից իրենց հանգուցեալ մօր հոգեհացի փոխարէն յօգուտ Ը-թեան ճաշարանի, թաղման օրը ճաշ տալու փոխարէն 75 ռ.

Նոյն նպատակով Հեղինէ և Իտա Հայրումեաններից ստացել է իրենց տատի յիշատակին 25 ռ.։

---

Վերայի Աստրախանի նախկին որբանոցի օգտին ստացուել է շնորհակալութեամբ Եակով Յով. Ջանոյեանի դագաղի վրայ պսակի փոխարէն Եակով Յով. Օգանէզեանից և Վասիլ Խրիստ. Ջանոյեանից 30 ռ.։

---

Կ. Հ. Բ. Ը-թեան նախագահ պ. Ս. Յարութիւնեանը ուղարկել է Պետրոգրադ Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդին ու Շխինեան քահանայի ընտանիքին հետևեալ հեռագիրը.

«Կորցնելով Մշակում անփոխարինելի հասարակական գործիչի, արժանաւոր հոգևոր պաշտօնեայի, օրինակելի ընտանիքի հօր վաղաժամ մահը, Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը. մասնակցելով Ձեր վշտին, խորին կսկիծով իւր սրտագին ցաւակցութիւնն է յայտնում»։

---

## ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ

Ծիրանաւոր որբանոցի խնամակալութիւնը՝ տ. Տէրտէրեանի միջոցով նոյն որբանոցի օգտին շնորհակալութեամբ ստացել է նուէրներ՝ Տ. Շադինեանից և Աննա Բաղդասարեանից, իրենց հանգուցեալ մօր՝ Ն. Շադինեանի յիշատակին՝ 50 ռ., Միհրան Մուրադեանի միջոցով՝ 40 ռ., Այվազեան Եպիսկոպոսից 30 ռ., Թ. Ն. Մուրադեանից՝ Շիոյեան քահանայի միջոցով՝ 25 ռ.։

---

Պարենաւորման բաժանմունքի Պետական միջոցներով

Փետրուարի 8-15-ը

Ալիւր ուղարկուած և Սանդար 2 վագոն, Բոլագերան՝ 1, Վաղարշապատ՝ 2, Աշտարակ՝ 1, Երևան՝ 2, Ղարաքիլիսա՝ 2 և Բաթում Արդանուչի որբանոցի համար 1, ընդամենը 11 վագոն։

Բրինձ ուղարկուած է Ղամարլու 333 պուդ։

Սապոն ուղարկուած է Ալէքսանդրապոլ 40 պ. և Իգդիր 60 պ., ընդամենը 100 պ.։

Գարի ուղարկուած է Իգդիր՝ 2 վագոն։

Լուցկի ուղարկուած է Գանձակ 25,000 տուփ, Ղարաչինար՝ 15,000 և Անենինօ՝ 15,000, ընդամենը 55,000 տուփ։

Շաքարաւազ ուղարկուած է Ղամարլու 125 պ.։

Թէյ ուղարկուած է Իգդիր՝ 10 արկղ։

### ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

ԲԱԹՈՒՄ —Մաղմանեանից. Խնդրում եմ շուտափոյթ Արդանուչի որբանոցի համար ալիւր ուղարկել. ճգնաժամ է։

Պատասխանուածէ, թէ մի վագոն ալիւր ուղարկեցինք։

## ՀԵՌԱԳՐԵՐ

ՆՈՎՈՐՈՍՍԻՅՍԿ— Լիսիկատոսից. Բեռնատար շոգենաւ «Նիկոլայ»-ը Ձեզ համար բարձեց 12,996 պ. ալիւր. Նաւի ապրանքագիրը (կոնոսամենտը) ուղարկեցի։

ՍԱՐԻՂԱՄԻՇ—Մոսկուայի Կոմիտէի լիազօր Սողոմոնեանից. Խնդրում եմ կարգադրել Սարիղամիշի պահեստից բաց թողնել Մոսկուայի Կոմիտէին Կարնի և Երզնկայի գաղթականների կարիքների համար 2 վագոն ալիւր. դրութիւնը ծանր է։

Պատասխանուած է. Սարիղամիշի պահեստապետին. Տալ Կոմիտէին մէկ վագոն ալիւր կանխիկ վճարով։ Ընկերութիւնս հազիւ կարողանում է իւր պահեստների պահանջը բաւարարել, ուստի հոգ տարէք ապագայում ալիւր գնել Կոմիտէի կարիքների համար։

# Քրոնիկոն

Ինչպէս յայտնի է, Վարդանանց տօնի առթիւ վաճառականների աւագ պ. Խաչատուր Աֆրիկեանը առաջարկել էր հայ վաճառականներին փակել խանութները։ Այս առթիւ Թիֆլիսի

ոստիկանապետը մի հրաման է արձակել արտաքին ոստիկանութեան պաշտօնեաներին՝ այս հակօրինական գործին խստօրէն հետամտելու, «չունքի» Վարդանանց տօնը ռուսական կայսրութեան օրէնքներով նախատեսնուած չէ, չկայ այդ օրուայ մասին և պարտադիր որոշում։

ոստիկանապետը ի զուր տեղ է վրդովուել այս յօժարակամ հայոց եկեղեցական-ազգային տօնի կատարման առթիւ, քանի որ ռուս պետութեան օրէնքները չեն արգելում ազգային, եկեղեցական տօների և այն էլ կամաւոր կատարումը։

ոստիկանապետի այս հրամանագիրն իրաւամբ յարուցել է դժգոհութիւն, որ նոյն իսկ քաղաքային խորհրդում քննութեան նիւթ դարձաւ։

—

—Հայ արուեստագէտների ցուցահանդէսը շարունակում է գրաւել մեծ թուով այցելուներ։ Ցուցահանդէսի սկզբից, փետրուարի 5-ից մինչև 15 ը ծախուել են 15,000 ռուբլու նկարներ։ Ցուցահանդէսը դեռ շարունակուելու է մինչև ապրիլի վերջերը։

—

Կովկ. Կայսեր. Գիւղատնտեսական ընկ. կից փետրուարի 14-ին բացուեցին կաթնատնտեսական դասընթացներ գլխաւորապէս խեղանդամ զինուորների համար։ Առայժմ դասընթացներում լսելու են 30 հոգի։

—

Պարիզում 65 տարեկան հասակում մեռել է ֆրանսացի տաղանդաւոր և սրամիտ երգիծաբան Օկտաւ-Միրբօն։

—

Մարիէտտա Շահինեանը Ջաւակական տօներին մի քանի դասախօսութիւններ կարդալու նպատակով Թիֆլիս է գալու։

—

Թիֆլիսում ապրող մի խումբ Թիւրքահայ մտաւորականներ հիմնում են «Հայրենակցական Միութիւն», որի նպատակն է լինելու օգնութեան գալ պատերազմից վնասուած Թուրքահայերին և կապ պահպանել Կովկասում գործող ընկերութիւնների հետ։

—

Աշակերտական ճաշարանի օգտին փետրուարի 10-ին կայացած ժողովարարութիւնից ստացուել է 2950 ռ., ծախսուած է 266 ռ., զուտ արդիւնք ստացուել է 2684 ռ.։

—

Անդրկովկասեան սպառողական միութիւնը նախաձեռնել է կազմակերպել մի շաբաթուայ փորձնական և գործավարական դասընթացներ կօօպերատիւների ծառայողների համար։ Դասընթացները հիմնուելու են գաւառական քաղաքներում։ Գորուայ գաւառում դասընթացները բացուելու են՝ Միխայլովում, Գորիում, Կասպիում, Ցխինվալում։ Թիֆլիսի նահանգի դասընթացները ղեկավարելու է միութեան հրահանգիչ Գ. Ի. Կանդելակին,

—

Իրաւաբանների խորհրդի նախագահ է ընտրուել առաջին պետական դումայի անդամ Ջափարիձէն, իսկ փոխ-նախագահ՝ Ի. Մ. Դոլուխանեան։

—

Հայ Գիւղատնտեսական ընկ-ը հրաւիրել է մի մասնագէտ հրահանգիչ՝ հայկական գաւառներում կօօպերատիւներ կազմակերպելու և պարենաւորման գործի համար շրջանային կօօպերատիւ միութիւններ առաջ բերելու նպատակով։

# Արտաքին տեսութիւն

## ՏԵՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐՆ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

*Երեւանի համագումարը... Դաշնակիցների յայտագիրը... եւ ազգային հարցը Լ. Ջորջի հայրենիքում.*

Երեւանում գումարուելիք փախստականական համագումարում արգելուած է խօսել հայերէն։

Դաշնակիցների, նաեւ Ռուսաստանի կողմից Գերմանիային ուղղած վերջին պատասխանի մէջ ի միջի այլոց նաև փոքր ազգերի ինքնորոշման և ազատ զարգացման սկզբունքներն էին յայտարարուած իբրև արդարացում իրենց մղած պատերազմի։

Այս երկու մտքերի հակադրութիւնը չեմ կարող աւելի որոշակի՝ պարզել, բայց եթէ պատմել*) թէ ինչ դրութեան մէջ է ազգային հարցը այդ յայտագրի հեղինակներից մէկի—Լլոյդ Ջորջի հայրենիքում—Ուէլսում և Անգլիայում։

Լլոյդ Ջորջը, Անգլիայի ներկայ աւագ-նախարարը Ուէլսից է, Բրիտանիայի արեւմուտքում ընկած փոքրիկ գաւառից։ Մինչդեռ Անգլիայի միւս կելտական, սկոտական և այլ ժողովուրդները մոռացել են իրենց լեզուն և բոլորն էլ «Շէքսպիր արքայի հպատակներն» են դարձել, փոքրիկ բրիտանական Ուէլսը պահել է իւր լեզուն և «ազգային» կուլտուրան։ Ինքը Լ. Ջորջը նախանձախնդիր և ջերմ պաշտպան է ուէլսերէնի և ...իհարկէ՝ մանաւանդ հայրենակիցների հետ՝ խօսում է ուէլսերէն։ Իր ընտանեկան լեզուն էլ ուէլսերէնն է։

Ուէլսը մի սիրուն ազգային աւանդութիւն ունի.—«Մի ժամանակ Արեւելքից մի հրաշունչ փիշապ թռչելով կըհասնի Բրիտանիա. Նա կ'աշխատի սարկացնել ողջ Բրիտանիան՝ իւր թևերը տարածելով նրա վրայ—Լոնդոնի ադմկալից ծովափերից մինչև Սեվերնի խաղաղ գետաբերանը։ Խիզախ բրիտանները սաքսոնական զօրքերի աւատականներն ու ծառաները կըդառնան։ Նրանք կ'աղօթեն իրենց Աստծուն և կ'պահեն իրենց լեզուն. բայց նրանք կըկորցնեն իրենց հայրենիքը, բացի վայրենի Ուէլսից»։

Եւ այս աւանդութիւնը ճշտութեամբ իրականացել է։ Մինչ-

*) «Русскія Вѣдомости» թերթից եմ քաղում տեղեկութիւնները։

դեռ միւս բոլոր ժողովուրդները իւրացրել են մի նոր խառնուրդ լեզու, այժմեան անգլերէնը, Ուէլսը պահել է իր ազգային ուրոյնութիւնը։ Ի՞նչպէս է կատարուել այս պատմական հրաշքը։ Ի՞նչպէս է փոքրիկ, աննշան Ուէլսը իր չնչին կուլտուրայով ընդդիմացել անմիջապէս իր գլխի վրայ ծառացող Լոնդոնի համաշխարային հզօր կուլտուրային։ Ի՞նչ կարիք զուտ, ազգային և տեղական մեծութիւն Պանտիկելին հակադրելու Շէքսպիրին։

Այո, նաև շատ «հայերի» համար անհասկանալի է այս կուլտուր-պատմական առեղծուածը։ Բայց ներկայ աւագ-նախարարը, Անգլիայի և համաշխարհային քաղաքականութեան ղեկավարը իր ճառերից մէկում յիշել է Ուէլսի բանաստեղծ Լուիսի հետևեալ տողերը՝ ուղղուած «երիտասարդ Ուէլսին... Հետևիր Դանտէի ղեկավարութեան, Շէքսպիրի վեհ կոչին, բայց երբէք մի մոռանար Պանտիկելին»։

Եւ կարելի է ասել, որ Ուէլսը իր ազգային կուլտուրան և լեզուն պահել է մասամբ շնորհիւ Լլոյդ Ջորջի.—դեռ միջին դարում Ուէլսը ունեցել է իր ազգային գրականութիւնը և պահել էր իր լեզուն։ Սակայն XV-րդ դարից սկսում ապազգայնացումը. ազնուականութիւնը այստեղ ևս իւրացնում է անգլիական լեզուն ու բարքերը. Նրան հետևում են հոգևորականութիւնն ու քաղաքացիները։ Ուէլսերէնը դառնում է ռամիկների լեզու։ Բայց հետզհետէ կրօնական բարեփոխութեան շնորհիւ՝ մի ուժեղ ազգայնական շարժում է սկսւում Ուէլսում. Թարգմանւում է Աստուածաշունչը ուէլսերէն և որոշ հերձուածողների շնորհիւ տարածւում ժողովքի մէջ. շարժումը անցնում է նախ քաղաքացիներին, ապա և ազնուականութեան. 1770 թ. լոյս է տեսնում առաջին ուէլսերէն ամսագիրը, իսկ այժմ կան մօտ 30 ամսագիր և 30 երկշաբաթաթերթ. միայն 19-րդ դարի ընթացքում լոյս է տեսել մօտ 10.000 գիրք։ 1893 թ. ուէլսերէնը պաշտօնապէս ընդունուել է տարրական դպրոցներում։ Այդ գործի համար ամենից եռանդուն աշխատողներից է Լլոյդ Ջորջը, դեռ իբրև գաւառական անյայտ փաստաբան պայքարելով Ուէլսի ազգային ինքնորոշման համար. նա կարողացել 1907 թ. ընդունել տալ լուսաւոր. նախարարութեան կից ուէլսեան կրթական դեպարտամենտ։ Այս դեպարտամենտը կրթութիւնը ազգային-ուէլսերէն է դարձրել համարեա ամբողջովին։ Եւ հետևանքը այն է եղել, որ մինչ 30 տարի առաջ հարուստ և ազնուական ուէլսցին ամաչում էր գործ ածել այդ լեզուն և արգելում էր իր զաւակներին խօսել այդ լեզուով, որպէս զի նրա կոպիտ շեշտերը չփչացնեն երեխաների լեզուն, այսօր արդէն ամեն բարձր ընտանիքում ուէլսերէնի ուսուցիչը անհրաժեշտ յարգելի հիւրերից է։

«Այդ ուէլսական դեպարտամենտը, ասում է «Լլոյդ Ջորջի երկրից» գրող ռուս Ժապոտինսկին, որ բացուել է լուսաւորութեան նախարարութեան կից, մի անօրինակ և շատ խրատական հաստատութիւն է։ Ռուս բիւրոկրատը կասէր. «Այդ մի դեպարտամենտ է, որ պետական դրամով առանձնապէս տարածում և զարգացնում է շրջանային բաժանականութիւնը—սեպարատիզմը»։ Մինչդեռ այդ հզօր Անգլիայի մեծութեան—միութեան և ամբողջութեան գործօններից մէկն է։ Ազգային կուլտուրան, ազգային լեզուն և գրականութիւնը—այդպիսի մի երկրում, այդպիսի պայմաններում—պահող ու զարգացնող այս «սեպարատ», բաժան ու առանձին կրթական վարչութիւնը միաժամանակ զօրեղացնում է բրիտանական մեծ կայսրութիւնը։ Սրա հզօր թևերի տակ ազատ ապրելով և ինքնուրոյն զարգանալով Ուէլսը անբաժանելիօրէն միացուել է Անգլիային։

Եւ այժմ լուծեցէք այդ հարցը՝ ո՞ւմ է պատկանում Լ. Ջորջը—Անգլիային, թէ՞ իր փոքրիկ Ուէլսին։ Աշխատեցէք ռուսական քաղաքացու հոգեբանութեամբ և տրամաբանութեամբ ըմբռնել՝ թէ ինչպէս կարող էր մի այնպիսի, մեր քաղաքական ժարգոնով—բարբառով ասենք, «նացիոնալիստ և սեպարատիստ» (ազգայնական և բաժանական) մարդ ընդհանուր և մեծ կայսրութեան քաղաքականութեան գլուխ կանգնել։ Երբ այսքանը ըմբռնէք՝ դժուար չի լինի հասկանալ վերոյիշեալ կուլտուր-պատմական առեղծուածը՝ թէ ինչպէս է փոքրիկ և կիսակիրթ, «վայրենի Ուէլսը» պահում իր ազգային և կուլտուրական անկախութիւնը Շէքսպիրի և Լոնդոնի կուլտուրայի դիմաց։

«Այդ դեռ ոչինչ, մենք աւելի առաջ կերթանք, ասել է ուէլսեան դպրոցական վարչութեան ղեկավարներից մէկը։ Մենք երկար ժամանակ վախենում էինք, որ անգլիական կուլտուրան, չնայած ազատութեան, կամաց կամաց կխեղդի մեր լեզուն։ Երկու հարիւր տարի սրանից առաջ ընդամենը 100 հազար մարդ էր խօսում ուէլսերէն։ Այժմ մէկ միլիոնից աւել ենք։ Մենք աջողել ենք քայքայման ու ապազգայնացման առաջն առնել։ Մենք նախ խաղաղ կերպով նուաճեցինք տարրական դպրոցը։ Այժմ քայլ առ քայլ նուաճում ենք միջնակարգ դպրոցը։ Յաջորդ սերունդը գուցէ մեր լեզուն լսի համալսարանում։ Իսկ պառլամենտից յետոյ Լ. Ջորջն ընդհանուր դեվոլիւցիա կատարել կտայ, և մենք էլ հոմրուլ—ինքնավարութիւն կունենանք. և Ուէլսը կդառնայ կայսրութեան հաւասարազօր անդամը՝ որպէս Աւստրալիան և Կանադան»։

Եւ այդ շատ հաւանական է, քանի որ Անգլիայի ընդհանուր պետական քաղաքականութիւնը նաև «ազգային» քաղաքականութիւն է. այդ երկուսը իրարից անբաժան են ի դէմս ուէլսացի «ազգայնական»—նացիոնալիստ, միաժամանակ եւ Մեծ Բրիտանիայի աւագ-նախարար Լլոյդ Ջորջի։

Մարդ կամայ ակամայ համեմատում է ուէլսացիներին հայերի հետ, վերյիշում դաշնակիցների յայտագրի սկզբունքները և մտածում՝ թէ ինչ տրամաբանութեամբ ու անհրաժեշտութեամբ պէտք է Երևանի համագումարում խօսակցական լեզուն ռուսերէն լինի, եթէ մասնակցողների 90 տոկոսը չի տիրապետում ռուսերէնին, իսկ առնուազն 25-30 տոկոսը չի էլ հասկանում այդ լեզուն իբրև ո՛չ-ռուսահպատակներ։

Ահա Լլոյդ Ջորջի հայրենիքը, ահա և մերը, ուր հաւասարապէս փոքր ազգերի կուլտուրական և ազգային ինքնորոշման սկզբունքներն են յայտարարւում։

Վ. Խ.

# Գեղարուեստ

## Գ—ին

Կուզեմ լինել քո գերին,
Որ դու իշխես իմ հոգուն,
Խօսքերը՝ սէր, տենչ բերեն
Սրտիս մանուկ և խոկուն։

Մտածում եմ ես անքուն
Գիշեր ցերեկ և ցրտին...
Մի վէպ ունեմ ես թաքուն՝
Միայն յայտնի իմ սրտին...

Այդ քո սէրն է, իմ անգին,
Այնքան քնքոյշ և անուշ
Որ լոյս կուտայ իմ կեանքին,—
Կեանքիս տարտամ և անուժ...

Դիլիջան Ովսաննիկ

# Գրականութիւն

## ՈՍԿԷ ԿՌՈՒԹ*)

Մի երկրագործի ցանքի և հունձքի 5—6 ամսուայ աշխատութեան արդիւնքը մի քանի գրիւ ցորեն էր եղած, որ շեղջած էր կալի մէջ և սպասում էր, որ արքունի պաշտօնեան գար, չափէր, արքունական բաժինը (տասանորդ) վերցնէր և մնացածը թողնէր գիւղացուն։

Իր հերթին եկաւ պաշտօնեան, շեղջին համարեա կէս մասը վերցուց և միւս կէսը թողեց հողագործին։ Այս երկրորդ կէսից գիւղացին պէտք էր հոգար բոլոր պարտքերը, որ արած էր հունձքից առաջ. բայց դժբախտաբար պատրաստի ցորենը իր պարտքերի քառորդի վճարման անգամ չէր բաւարարում, որովհետև առնելիքուորները բազմաթիւ էին,—ռէսն ու գրագիրը, դալուղն ու գզիրը, տէրտէրն ու տիրացուն, նօպատարն ու ղուռուղչին, բռուտն ու փինաչին, նաճարն ու դարբինը, քուրդն ու մթրըպը, անկն ու ճարնկանն էլ աւելի։ Իւրաքանչիւրն եթէ կուցք մը վերցնէր, նորից ցորենը չպիտի բաւականանար։ Գիւղացին զղջաց շեղջը չափած լինելու համար. չըչափուած գոնէ մի յոյս էր... Կսկիծն ու յուսահատութիւնը մղեցին գիւղացին հետևեալ միջոցին. բոպէարար սկսեց տուած ցորենը յետ խլել սկսած արքունի բաժնից. նորից հաւաքեց, շեղջեց և պաշտօնէի ձեռքից արքունի կնիքը (թաճը) յափշտակելով շեղջը կնքեց և յանուն օրէնքի բողոքեց, որ ոչ ոք իր ցորենին չը մօտենայ, մինչև որ ինքը դիմում կատարէ թագաւորի մօտ։ Սկսուեց մի աղմկալի հարահրոց, քաշքշուկ, ծեծ, տուր ու դմփոց, հայհոյանք... բայց գիւղացին արդէն հեռացել էր կալից և ոչ ոք համարձակեցաւ արքունական կնիքն եղծանել և ցորեն վերցնել։

Երբ մութը վրայ տուաւ, գիւղացին ցորենը բարձաւ եզների վրայ ուղղակի դիմեց թագաւորին, որովհետև մայրաքաղաքը շատ հեռու չէր։

Գիշերով գիւղացին ցորենը շեղջեց պալատի դէմ ու դէմը. երբ առաւօտ եղաւ, պայծառ արևը բարձրացաւ մէկ-երկու մարդահասակ և թագաւորն իր արքայական փառքով եկաւ դուրեկան շրջակայքը դիտելու և շունչ քաշելու, գիւղացին սկսեց մի ճըշմարիտ դերասանական խաղ խաղալ՝ներկայացնելով թագաւորին մի օր առաջ իր կալի մէջ պատահած անցուդարձը։ Վարագոյրը բացուած էր. գիւղացին նախ կատարեց արքունի պաշտօնեայի դերը, նրա նման ցորենը երկու մասի բաժանելով. յետոյ միւս առնելիքուորներին և նրանց թուին համաձայն շեղջի մնացած կէսը վերածեց փոքրիկ մասերի կամ կուտոցների. վերջն սկսեց ինքն իրան ծեծել, ինչպէս ծեծկռտուած էր մի օր առաջ պարտապահանջներից, վերջապէս իբր յափշտակելով սրանից-նրանից ցորենը՝ հաւաքելով կազմեց մի շեղջ։

Գիւղացու այս տարօրինակ շարժ ու ձևերը մեծ զարմանք պատճառեցին թագաւորին, որ անմիջապէս իր ներկայութեան կանչել տուաւ։

Այնտեղ, ինչպէս հիւանդը բժշկի առաջ, պարզեց իր դարդն ու ցաւը. իր 4—5 ամսուայ դառնաբիրտ աշխատութիւնը, արեան գնով հազիւ մի քանի գրիւ ցորեն ձեռք բերելը. արքունական բաժնի տարուելը, առնելիքուորների արածները, ծեծն ու քաշկռտուքը և այլն։

Թագաւորն որ արդարադատութեան մեծ հռչակ էր վայելում իր երկրի մէջ, իրազեկ լինելով հողագործ գիւղացու խեղճական թշուառ դրութեանը, խղճաց վրան, հրամայեց որ բացի այդ ցորենից պետական գանձից 200 ոսկու մի գումար ևս տրւի նրան և ճամբու դրուի դէպի իրեն տունը։

Այդ բանի վրայ նա հրամայում է որ մայրաքաղաքի մեծ հրապարակում մի մեծ սիւն կանգնեցնեն, վրան գրելով մի յայտարարութիւն, թէ ով որ մի նեղութիւն, զրկանք կամ բողոք ու գանգատ ունի, թող գայ իր քամակը քսէ սիւնին, իր ցաւերը յայտնէ թագաւորին և իր պահանջներին բաւարարութիւն ստանալով՝ երթայ։ Թող թշուառութիւն, զրկանք, անիրաւութիւն չլինի իմ ժողովուրդի մէջ, հրամայում է Արդարասէր և Ողորմած թագաւորը։

Հարիւրաւոր, հազարաւոր խեղճեր ու թշուառներ դիմում են մեծ հրապարակը, քամակները տալիս մեծ սիւնին, բաւարարութիւն ստանում և գոհ սրտով մեկնում իրենց տեղերը։ Անբան անասունները, հաւք ու հաւքորէքը, եռուձն ու զեռունը, օձն ու սողունն անգամ դիմում են անում և նոյն կերպ իրենց ցաւերին դեղ ու դարման ստանում։

Մի անգամ թագաւորն իր իսկ աչքով է տեսնում, թէ ինչպէս մի վիշապ—օձ*) մտնում է հրապարակը, մօտենալով մեծ սիւնին քամակը տալիս՝ և անցնում գնում։ Թագաւորի հրամանով ծառաները հետևում են վիշապին կամ յուշապին, և անտառում տեսնում որ նա մի վայրի այծ է կուլ տուել, բայց այծի երկար կոտոշները սալոռնելիս են եղել նրա կոկորդում, տնքում և ոռնում է և չի կարողանում կուլ տալ։ Վրայ են հասնում ծառաները, այծի կոտոշները կտրատում և դիւրութիւն են տալիս օձին իր որսն անուշ անելու։

Շատ չանցած՝ յուշապն երեք ոսկէ կռութ բերանն առած բերում ձգում Մեծ Սիւնի քովը ու անցնում գնում։

Հրաշալի ոսկէ կռութները թագաւորի սեղանի զարդն էին, բայց խելքից ու մտքից դուրս բաներ. իսկական ցորենի ծղոններ. ծղոնների վրայ են ծնկակալներ, քիտեր, փիլոն, փիլոնների մէջ՝ հատիկներ, բայց զուտ ոսկի...

—Վէզիր, ասում է թագաւորը այս հրաշալի հասկերի բացատրութիւնը քեզանից պահանջում եմ. երկրից երկիր պիտի ընկնես, աշխարհներ ման գաս, տարիքոտ ու խելացի մարդեր պիտի գտնես, հարցնես, փնտռես, իմանաս և գաս ինձ ասելու թէ ով է ցանել այս տեսակ ցորեն, երբ է ցանել և ուր։

Վէզիրը օրերով ու ամիսներով ճամբորդելուց և հարց ու փորձ անելուց յետոյ հասկանում է որ ամսօրեայ հեռաւորութեամբ երեք տարբեր քաղաքների մէջ երեք տարիքաւոր ծերունիներ են ապրում, և նրանք ու միայն նրանք կը կարողանան ոսկէ կռութների մասին տեղեկութիւններ տալ։

Ծերուկ եղբայրներից առաջինը որ՝ օրինակ, ասենք բնակում էր Վան քաղաքում, 120 տարեկան էր, վէզիրին ասում է՝ որ ինք ոչինչ չգիտէ ոսկէ կռութների մասին, կարող էք, ասում է, տեսնել երկրորդ եղբօրս, որ, օրինակ բնակւում է Բաղէշ քաղաքում։ Սա ևս ուղարկում է երրորդ եղբօր քով,որ ասենք թէ՝ բնակւում էր Դիարբէքիր քաղաքը։ Դիարբէքիրցի ծերուկը թէև 190 տարեկան, բայց միւս երկու եղբայրներից աւելի կայտառ, աւելի աշխոյժ ու երիտասարդ էր երևում։

—Այ մարդ, ասում է վէզիրը, ինձ ասացին որ դու եղբայրներիցդ ամենամեծն ես, բայց նրանցից երիտասարդ ես երևում. բայց այդ ինձ այնքան չի հետաքրքրում, այլ այն խընդիրը՝ որի համար քեզ եմ դիմել. հեռու աշխարհից եմ գալիս, շատ ճամբաներ եմ չափել, շատ մարդիկ եմ տեսել, հարցրել, փնտռել, և ոչ ոք չէ կարողացել բաւարարութիւն տալ իմ խընդրքիս։ Դուք ինձ պիտի ասէք թէ այն ոսկէ կռութները որ

*) Բուլանըղի գաւառաբարբառով **կռութ** նշանակում է հասկ և թերևս կազմուած է **կուռ** բառից և **ոյր** (ութ) վերջածանցից, իբր հացաբոյսին ամենէն կուռ կամ հաստատուն, հոծ մասը. օր.-համօթէն եղաւ կուռ երկաթ՝ մնացս։

*) Ժողովուրդն ասում է յուշապ-օձ։

յուշապ օձը բերեց մեր Արդարասէր Թագաւորին, ում է ցանել, ժւր և երբ։

—Նստիր, պատասխանում է ծերունին, դեռ հանգստացիր, դու իմ հիւրն ես, նախ պէտք է հիւրի հանդէպ ունեցած մեր պարտականութիւնը կատարենք, միասին ճաշենք, և պատասխանըդ կըստանաս։

Ճաշի սեղանին ծառայում էր ծերունու նեղած կշտով*) կինը. ճաշելուց յետոյ ծերունին հրամայում է կնոջը—կնիկ, կնիկ. վերնայարկը ելիր, և ամբարից մի ձմերուկ բեր ուտենք. Գետնից մինչև վերին յարկը 40 մատ (աստիճան) սանդուխ է դրուած լինում։ Կինը գնում է մի ձմերուկ է բերում, բայց ծերունին ասում է. Այդ չէ, գնա մի ուրիշը բեր։ Կինը մի ուրիշ ձմերուկ է բերում, բայց մարդը նորից ասում է. Այդ չէ, գնա մի ուրիշը բեր։ Վերջապէս նեղած կշտով կինը քառասուն անգամ բարձրանում է վերև և վար գալիս, մինչև որ 40-րդ ձմերուկին հաւանում է ծերունին և ուտում հիւրին հետ։

Ճաշից յետոյ ծերունին վէզիր հիւրին տանում է վերնատուն, ուր միայն երկու ձմերուկ է լինում. այ, ասում է, տեսնում ես որ ամբարում ընդամենը երեք ձմերուկ ունէինք, բայց կինս իմ հրամանը յարգելու համար առանց տրտունջի 40 անգամ բարձրացաւ վերև և վար իջաւ. ահա այս առաքինի և հնազանդ կնոջ շնորհիւն է, որ 190-րդ տարիքիս մէջ դեռ երիտասարդ եմ։

Իսկ ոսկէ կռուեների մասին լսիր.—Նուշիրւան կամ Նուշրևան**) Թագաւորի օրով մի գիւղացի իւր արտի երեսը վարձով է տալիս դրացուն ցանք անելու։ Վարձակալ դրացին արտը վարելիս մի աման լիք ոսկի է գտնում. կանչում է արտատէրին և ասում.

—Դրացի ջան, արտդ վարելիս, մի աման ոսկի եմ գտել. ահա այդ ամանը, ստացիր։

—Ո՛չ, պատասխանում է արտատէրը, քանի որ արտիս երեսը ծախել եմ, իրաւունք չունեմ ոսկին առնելու. մինչև հիմա հարիւր անգամ այդ արտը վարել ցանել եմ, բայց ոսկի չեմ գտել, այդ քու բաժինն է (ղսմաթ) Աստուած տուել։

Երկար օրեր վիճում են այդպէս, մինչև որ գործը գնում է դատարան։ Դատաւորը ուրիշ ճար չի գտնում, բացի այն՝ որ վիճողների տղան ու աղջիկը ամուսնացնում է և աման ոսկին յատկացնում նորապսակ հարս ու փեսին։ Բայց մինչև որ դատավարութիւնը վերջանում է և դատըվճռւում, ցանքի ժամանակն էլ է անցնում. գիւղացին միայն մէկ ակոսն էր վարել և երեքչորս հատիկ ցփնել հողի մէջ, որից գոյանում են ոսկէ հասկերը, արմատից սկսած մինչև կռուեները ձոյլ ոսկի...

Սիրելի ընթերցող, մեր հէքիաթարան պապիկ-մամիկներ պատմում են որ Նուշ-Րևանը Երևանի Նուշ Թագաւորն է եղել. իսկ այն Արդարասէր Թագաւորը՝ մեր Աշոտ Ողորմածը, որոնց օրով իրաւունքն ու արդարութիւնը յարգւում, իրաւազուրկները պաշտպանւում, անիրաւները պատժւում, և ոչ թէ միայն մարդիկ, այլ օձերն ու յուշապներն անգամ օգնութիւն ու պաշտպանութիւն են գտնում. կանայք լինում են Տօր որդի, հնազանդ և առաքինի, ծերերը՝ երիտասարդ, դրացիները իրաւաճանաչ, դաշտերը՝ անկաշառ և արդարադատ և հողը՝ ցանուած ցորենը ոսկի է դարձնում ու ցօղունը ոսկէ կռուե տալիս։

Ս. Մովսիսեան

29 դեկտ. 1916 թ.
Մ. Ղարաքիլիսա

*) Ցղի. ժողովուրդը յղի, փորով է բառերը գործածում է անասուններին համար, իսկ «նեղած կշտով», «երկու հոգով», «փոր վըր բերնին» բառերը կանանց համար։

**) Ժողովուրդը ստուգաբանում է իբր Նուշ-Երևան, այսինքն՝ Երևանի Նուշ Թագաւոր։ Նուշ՝ իբր արական անուն, մինչև այսօր էլ կայ։ Ս. Մ.

Այդ Թագաւորն իրօք Պարսից Սասանեան մեծազօր արքայից արքաներից մէկն է, որ մեր պատմութեան մէջ յայտնի է Անուշ-Վռամ անունով։

Խմբագր.

---

# ՀԱՅ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ*)

## Բ.

Հայ արուեստագէտների ցուցահանդէսին մասնակցողների թիւն այնքան մեծ է, որ անկարելի է բոլորի մասին խօսել, այդ պատճառով էլ կյիշատակենք այն արուեստագէտներին, որոնք առանձնապէս աչքի են ընկնում։

### Եղիշէ Թադէոսեան

Սա բանաստեղծ և միևնոյն ժամանակ հոգեբան նկարիչ է։ Բանաստեղծ է իւր նկարների նիւթերով, երևոյթներն ըմբռնելու տեսակով, գոյների խաղով. հոգեբան է մարդկային հոգին ըմբռնելու կարողութեամբ։

Թադէոսեանը չի տալիս բնութեան տպաւորութիւններն այնպէս, ինչպէս ըմբռնում է մի որոշ վայրկեան, այլ վերամշակում է, շեշտում է, գունաւորում է դրսի տպաւորութիւններն բանաստեղծական ոգով. Օր. Բէյրութի ափերին նկարի մէջ լուսնեակի լոյսով մի շերտ ողողուած և աջ ու ձախ կողմից մութ-կապոյտ լուսով շրջափակուած ծովը, հեռւում երևացող լոյսը, նաւում իրար մօտ նստած և կապտաւուն լուսով ծածկուած երեք կանայք, ճիշտ է, միախառնուելով մի իրական տեսարան են յստեղծում, բայց զգում ես, որ այդ մի իրականութիւն չէ, որ իշեցնում է Բէյրութի ափը, այլ մի տեսարան, որ ստեղծագործուել է բանաստեղծ-նկարչի հոգու մէջ և առարկայացել նրա իսկ վրձինով։

Թադէոսեանը բանաստեղծութիւն է մտցնում նկարի մէջ ոչ միայն նիւթի իւրատեսակ մշակումով, այլ և գոյների խաղով։ Նկարներն երկրի վրայ պաշտելու մի մեծ աստուած ունի—այդ լոյսն է. պարզ երևում է, որ Թադ. շատ խորը պաշտամունք ունի դէպի լոյսը, որին օրինակ կարող է ծառայել «Սպասում են եկուորներին» նկարը։

Ծովափին մի խումբ թուրքեր շարան-շարան նստած են, տեսւում իրևում է ծովի ջրի մի մասը։ Թէ ծովի ջրի մէջ մեղմօրէն արտացոլուած լոյսերը, թէ տախտակամածի լոյսը, թէ սպասողների հանդերձների գոյն-գոյն ցոլքերը այնպէս են ներդաշնակօրէն իրար հիւսւում, իրար միանում, որ կարծես գոյների մի բարդ, բայց անասելի հաճելի ներդաշնակութիւն, սիմֆոնիա է ստեղծւում։

Որ Թադէոսեանը բանաստեղծ՛է, երևում է նաև այն բանից, որ նրա երևակայութիւնը գործում է թափով։ Այս կողմից առանձնապէս աչքի են ընկնում «Հէքիաթ», «Միդիաս և Ջէս», «Թիւրքիա» և «Թաշկլութիւն» նկարները։ Օրինակ «Հէքիաթը»։ Մի մեծ,շատ մեծ և խսկապէս որ հէքիաթական ծառի տակ նստած են կանայք. շատրուանի շուրջը պարում են այլ կանայք։ Մութ-կապտաւուն ծառը իւր լիքը, ծանր ու գերիշխող տպաւորութեամբ, ծառի տակ գոյն-գոյն զգեստով և շատրուանի շուրջը ոլորուող կանայք ճիշտ որ քաղցր հէքիաթի, այն էլ արևելեան պայծառ ու գունեղ հէքիաթի տպաւորութիւն է թողնում։

Նոյնպիսի գեղեցիկ, դիւրեկան պատկերաւորութիւններ է ստեղծել նկարչի երևակայութիւնը յիշեալ միւս նկարների մէջ։

(* Տես «Համբաւաբեր» № 6։

Թադ. հոգեբանական հարցերով էլ է զբաղուած. Նրան հետաքրքրում է երեխային սիրող մայրը (Մադոննան), խաչուած Քրիստոսի և իւրայինների տառապանքը, Յիսուսը Գեթսեմանի պարտէզում հոգեկան անասելի խոր ապրումներով, հայ գեղջուհին խաչքարի առաջ կրօնական խորն երկիւղածութեամբ (այս վերջին երկու նկարները գտնւում են Գէորգեան Ճեմարանում)։

Թադ.-ին ուրեմն հետաքրքրում են մարդու հոգեկան զանազան վիճակները և նա յաճախ աշխատում է մարդն ու բնութիւնը իրար մօտեցնել։

Գերմանացի յայտնի նկարիչ Բէօկլինը սիրում էր բնութիւնը և մարդուն, իբրև բնութեանը լրացուցիչ մի հանգամանք։ Մարդուց ու բնութիւնից ստեղծում էր նկարչական հէքիաթներ։

Թադէոսեանը Բէօկլինեան գծեր է ցոյց տալիս. սիրում է նրա պէս պայծառ գոյները, սիրում է նրա պէս հէքիաթների, աւանդութիւնների և կրօնական աշխարհները։ Սակայն մի տարբերութեամբ. Բէօկլինը յանդուգն է, վստահ և իւր երևակայութեամբ գեղարուեստական մի հեղեղ. Թադէոսեանը անվստահ է, քաշուած և հեռու յանդուգն ծրագրերից։

Յանկանք, որ պ. Թադէոսեանը մեր հայկական հէքիաթական ու դիւցազնական աշխարհը շատ աւելի մեծ խառնուածքով՝ տեմպերամենտով ու կարողութեամբ արտայայտէ իւր ապագայ նկարներում։

## Փ. Թերլեմեզեան

«Համբաւաբերի» անցեալ տարուայ № 3-ում խօսել եմ Թերլեմեզեանի մասին։ Անցեալ տարի ցուցահանդէսին մասնակցում էր միայն մի քանի նկարով, այս տարի մի քանի տասնեակի են հասնում նրա նկարները։

Սրա մասին անցեալ տարի ասել էի. «Կազմակերպուած որոշ ուղղութեան—իրապաշտ և յաջող նկարիչ է»։ Այս յատկանիշներն առանձին շեշտով երևում են այս տարի. այժմ նա շատ աւելի կատարելագործուած նկարներ ունի, քան անցեալ տարի։

Առանձնապէս աչքի են ընկնում սրա նիւթեղ դիմանկարները, որոնք ունեն բնորոշ գծեր, կենդանի արտայայտութիւն և հաճելի ֆոն։ Թերլեմեզեանը ցուցահանդէսի ամենից ուշագրաւ դէմքերից մէկն է։

## Ս. Խաչատրեան

Երիտասարդ նկարիչ Խաչատրեանը անցեալ տարի մասնակցում էր ցուցահանդէսին. Նրա նկարների մասին արտայայտուել եմ «Համբաւաբերի» անցեալ տարուայ № 3-ում։ Անցեալ տարի սրա մասին գրել էի, որ նիւթերը լաւ չի մշակում, որ գործողութիւն, շարժում տալ չի կարողանում, որ նա տրամադրութիւն է ցոյց տալիս շաբլոնի նկարիչ դառնալու, բայց աւելացրել էի, որ եթէ նկարիչը համբերութիւն ունենայ և նիւթը բազմակողմանի մշակի, «յուսատու նկարիչ կդառնայ»։

Այժմ ապահով կերպով կարելի է ասել, որ դարձել է արդէն յուսատու նկարիչ. յառաջադիմութեան անսպասելի քայլեր է արել Խաչատրեանը ամեն կողմից։ Առաջ որ նրա նկարների կազմութիւնը՝ կոմպոզիցիան խառն էր, անհաստատ, այժմ դարձել է պարզ, որոշ և հաճելի. օր. կարող են ծառայել Որբերի աշխարհում և Հայկական պար նկարները։ Բաւական բարդ խնդրի ծանրութեան տակից պատուով է դուրս եկել։ Նկարիչն իրական աշխարհին աւելի է մօտեցել և բնութեան մէջ աւելին է տեսնում, քան առաջ։ Ցոյց է տալիս գոյների խնդրում նրբազգացութիւն։ Անկասկած է, որ պ. Խաչատրեանը էլ աւելի համբերութիւն և վերլուծութիւն կըմտցնի իւր նկարների մէջ, ապագայում. տակաւին նուաճումների ասպարէզներ ունի իւր առաջ։

Գ. Լեւոնեան

# Մատենախօսութիւն

## ԳՐԻԳՈՐ ԶՈՀՐԱՊ *)

Դառնալով Զօհրապին՝ ռոմանտիզմը նրա երկերում արտայայտւում է մի քանի բնորոշ գծերով։ Նախ՝ նա ունի այնպիսի նորավէպեր, որոնք իրենց նիւթերով ֆանտաստիկ, խորհրդաւոր, հերոսական բնոյթ ունին. այդպիսիներից են. օրինակի համար, «Զարուհին», «Ֆուրթունա», «Կատակը» և այլն, որոնք յիշեցնում են Հիւգոյին. վերջինիս հերոսներից մէկի՝ Ռիւյ Բլասի անունը, ի դէպ ասած, նոյնիսկ յիշատակուած է այդ պատմուածքներից առաջինի մէջ։

Բացի այդ՝ Զօհրապի նկարագրութեան ձևը, ինչպէս և պատկերաւորութիւնները յաճախ ոչ մի նմանութիւն չունին իրապաշտական արուեստին յատուկ եղող արտայայտութեանց, այլ ուղղակի ռոմանտիկ քնարականութեան ներկայութիւն են հաստատում այդ արձակ գրուածքների մէջ։ Այսպէս՝ «Անդրշիրիմի Սէր» նորավէպում մի սեթևեթ կնոջ նկարագրելիս՝ ասում է հեղինակը. «Աստղ մը իր շուքը պիտի գծէ, թիթեռնիկը պիտի ոստոստէ. գետը պիտի վազէ երթայ ու աղուոր կնիկը պիտի ժպտայ ասոր անոր»։ Կամ թէ՝ «Մահը միայն բան մը չէր կրցած հեռացնել անկէ, պճնրանքը. թերևս անոր համար որ առանց անոր՝ Սերաֆիթանկին մը ըլլալէ պիտի դադրէր հրեշտակ մը դառնալու համար» (նոյն, էջ 18։

Կամ թէ՝ «Խօսուն աչքեր, ժպտուն աչքեր, անմեղ ու մեղաւոր աչքեր՝ որոնք տիեզերքին երանութիւնը իրենց ծոցին մէջ կը պահեն» (նոյն, էջ 8)։

Հիմա այդ օրինակների կողքին դրէք իրապաշտական հետևեալ սքանչելի հատուածը, որ նկարագրում է մի անառակ աղջկայ լիրբ ձևերը, և որ գտնում ենք «Մակդաղինէ. վերնագրուած պատմուածքում»։ Պարարտ ու շնորհալի կազմը այս կնոջ անպատկառ կերպով հոլանի կուրծքէն. շարունակ վար սահող սև գուլպաները շտկելու, տեղը բերելու համար ըրած յարատև ջանքէն կը յայտնուէր։ Ինքն ալ ցանկայարոյց կեցուածքի մը հրապոյրները կ'աւելցնէր անոր վրայ, գիտակից ու ջանադիր լրբութեամբ մը։»

Այդպիսի նմուշներ կը գտնենք նաև «Փոստալ»-ի, «Մեղայ, Տէր»-ի, «Մամայիդ բարև ըրէ»-ի մէջ, որոնք իրապաշտական ռէալիստական ցայտուն պատկերներ են։

Այժմ արդէն մեր եզրակացութիւնը պարզ է. Զօհրապի մէջ երկու անձնաւորութիւն կայ, մէկը սկեպտիկ, միւսը միամիտ. առաջինը զարգացել է քաղաքական, հասարակական և գրական այնպիսի պայմաններում, որոնք մռայլ իրականութեան վրայ էին դարձնում հեղինակների ուշադրութիւնը՝ ծնեցնելով տաճկահայ գրականութեան մէջ ռէալիզմը՝ իրապաշտութիւնը։ Իսկ երկրորդ անձնաւորութիւնը՝ միամիտը կապուած Զօհրապին անմիջապէս նախընթացող սերնդի հետ, որը ռոմանտիկ էր և Պոլսում զարգանալու համար ունէր նպաստաւոր հող, ինչպէս որ պարզաբանեցինք արդէն։

Ուրեմն մեզ այսօր զբաղեցնող հեղինակի գրական ըմբռնողութիւնը միութիւնից զուրկ է, մի տեսակ տատանւում է երկու հակադիր ուղղութիւնների միջև, թէև նա թէ մէկ և թէ միւս դէպքում ցոյց է տուել ուշագրաւ շնորհք, որը երբեմն նոյնիսկ տաղանդի աստիճանի է հասնում։

Գրական ուղղութիւնների փոխանցման շրջանում ապրող հեղինակների ճակատագիրն է այդ, որը սակայն բեղմնաւոր նշանակութիւն է ստանում յետագայ գրական սերնդի համար։

*) Տես «Համբաւաբեր» №2,5

### Արուեստը.

Նախորդ գլուխներում այս ու այն տեղ անցողակի կերպով արած մեր դիտողութիւններից արդէն կարելի էր որոշ չափով գուշակել Զոհրապի արուեստի բնոյթը, բայց և այնպէս անհրաժեշտ է աւելի պարզ բնորոշել մեր հեղինակի ստեղծագործութեան նաև այդ կողմը։

Արդ, նրա հատորների մէջ գրեթէ չկայ մի պատմուածք, որի մէջ գոնէ մի քանի բառով չը գտնենք հեղինակի ներկայութիւնը. այնպէս որ կարդալով այդ պատմուածքները՝ կարելի է որոշ չափով գաղափար կազմել հեղինակի կենսագրութեան մասին. օրինակ՝ «Թարգմանչաց վարժարանին յիշատակներէս ամենէն քաղցրը՝ պատուհան մըն է...»

Կամ թէ՝ «... հինգ տարի վերջը, երկրաչափի վկայականս առնելէ ետքը, տօնխմբ. երեկոյթի մը մէջ հանդիպեցայ իրեն...»

Կամ թէ՝ «...Միացեալ Ընկերութեանց Տնօրէն խորհրդին կանդամակցէի...»

«Կամ թէ՝ երբ դատի մը առթիւ ես այդ կողմերը գացի անկէ քանի մը տարի առաջ...» և այլն։

Այսպիսով Զոհրապի արուեստի առաջին գիծը ենթակայականութիւնն է (subjectivité), որը աւելի պայծառ կը դառնայ մեզ համար, եթէ ասենք, որ նա նաև միտումաւոր է որոշ չափով. իւր պատմուածքների մէջ փաստաբան Զոհրապը ճարտասանական տաղանդով, իւր հեգնանքով, սուր դիտողութիւններով արդարացնում է կամ մտրակում ընկերական կեանքի այս կամ այն երևոյթը. մի տեղ եկեղեցու յիշատակութիւնն է նրա ուշքը գրաւել, մի ուրիշ տեղ նրան զայրացնում է ամուսնական կեանքում պահպանուած ձևական հաւատարմութիւնը. մի երրորդ տեղ կաթոլիկների մոլեռանդութիւնն է դատապարտում և այլն։

Բայց Զոհրապը ոչ միայն իւր որոշ գաղափարներն ու համոզումներն ունի, որ նա կարմիր թելի նման անց է կացնում իւր պատմուածքներում, այլ մինչև անգամ նրա հերոսներից ոմանք, իբրև տիպար անձինք, կրկնւում են։ Արդէն խօսել ենք այն անձնաւորութեան մասին, որը հեղինակի ներկայացուցիչն էր, նրա ընտրած տիպը տղամարդու, այսինքն դարձեալ հեղինակի ներկայութիւնը, ճաշակը, հասկացողութիւնը ցոյց տուող մի փաստ էր։ Այժմ ասենք նաև, որ նրա նկարագրած կանանց մէջ ես դժուար չէ գտնել մի ընդհանուր տիպար, որը զանազան անունների տակ և տարբեր դերերով յաճախ երևան է գալիս նրա վէպիկներում։ Այդ կինը մարմնեղ է, անպատճառ փարթամ կրծքով, ունի սիրուն ձեռներ ու ոտներ. սքանչելի են առատ մազերը, ծծրակի սպիտակութիւնը, և նրա աչքերին նայողը կը նկատի սիրելու, կեանքը վայելելու մի անզուսպ կրակ, որը չի էլ փորձում թաքցնել ուրիշներից։ Թող, որչափ ուզում են, բամբասեն. ինքը գիտէ, որ ուրիշները եթէ անարատ էակների հռչակ ունեն, դեռ չէ նշանակում, որ այդպէս են. նրանք բոլոր էլ կեղծաւորներ են և եթէ իրեն նման գեղեցիկ լինէին և հնարագէտ, նոյնպէս կը վայելէին կեանքի հաճոյքը և իրենց ծերունի ուժասպառ ամուսինների քթի տակ սիրականներ կը պահէին՝ թեանցուկ շրջելով պարահանդէսների մանուշարոյր դահլիճներում։

Տեսնում ենք, որ Զոհրապի տիպար տղամարդն ու կինը կատարելապէս համապատասխանում են միմեանց և երկուսն էլ, մեծ մեղաւորներ, ունին գոնէ այն առաւելութիւնը որ չեն էլ մտածում կեղծել։ Ծաղիկներով լի սենեակում պարտասած ու հեշտամոլ ընկողմանած մի զոյգ է այդ գաղափարականութիւնից բոլորովին զուրկ, որը տաճկական մայրաքաղաքում միայն կենցաղասիրութիւն է փնտրում շուրջը։ Սուլթան Համիդի օրով բարձր ձգտումները հալածուելով՝ իրենց տեղը թողել էին միայն կնոջ մարմնի պաշտամունքը, որին նպաստում էին նաև Պոլսում բնակող թեթևամիտ եւրոպացիներն իրենց մոդաներով ու սանձարձակ կեանքով։*)

Զոհրապի արուեստի երկրորդ յատկանիշն է բնորոշելու մեծ ունակութիւնը։ Երբեք ընդարձակ նկարագրութեանց առարկայ չեն դառնում նրա պատմուածքներում երևան եկող վայրերը, ժամանամիջոցը, անձինք, գործողութիւնները, ոչ։ Հեղինակը կարողանում է մի քանի տողով հիանալիօրէն հասկացնել իւր միտքը, պատկերացնել հերոսներին, շեշտել գործողութեան մի քանի էական մոմենտները միայն, երկրորդականները թողնելով ստուերի մէջ, առանց ծանրանալու և իսկոյն թռչում է առաջ՝ ժպիտ, հեգնանք, նուրբ դիտողութիւններ ցանելով աջ ու ձախ։ Այնպէս որ անզգալի կերպով կարդում, վերջացնում էք նրա նորավէպերը.

Նրանից իւրաքանչիւրի մէջ դուք չէք գտնի բազմաթիւ մարդիկ. ընդհակառակն, Զոհրապի տիպարների թիւը հասած է մինիմումի. սովորաբար երկու-երեք հոգի են դերակատարները։ Ճիշդ է, գործող անձանց թուի սակաւութիւնը պարզ բնոյթ է տալիս նրա թէ տիպարներին և թէ առհասարակ պատմուածքներին, բայց մեզ թւում է, որ այդպիսով կեանքը դառնում է մի տեսակ փետրազուրկ։ Աշխարհում ինարկէ կան մի-երկու հոգուց բաղկացած ընտանիքներ, պարզ դէպքեր, մենակ մարդկանց հանդիպումներ, բայց կեանքը աւելի բարդ է, ունի իւր ցայտուն անձնաւորութիւնները, որոնց շուրջը կիսաստուերի մէջ վխտում են հարիւրաւոր մարդիկ, որոնք իրենց երանգներով բնորոշում են գլխաւոր հերոսներին։

Այն ինչ Զոհրապը չէ տալիս այնպիսի բազմամբոխ ու սովորական տեսարաններ, միջավայրի աղմկալի ցուցահանդէսներ։ Այս պատճառով էլ նրա պատկերները յաճախ միայն առաջին պլան ունին կարծես։ Հերոսները չունին մինչև անգամ շատ երեխաներ, ազգականներ, նոյնիսկ արհեստի, զբաղմունքի, ընտանեկան պարտականութիւնների լուրջ հոգսեր ունեցողներ քիչ կան նրանց մէջ։ Այդ խնդրում եթէ նրա երեսունըչորս պատմուածքներից մի քանիսը բացառութիւն են կազմում, բարեբաղդաբար յաջող պատմուածքներիցն են, այսինքն մի բան, որ դարձեալ հաստատում է մեր դիտողութիւնը։

Կարիք կա՞յ արդեօք յիշեցնելու, որ տասնեակ տարիների ժամանակամիջոցների վրայից մեծ ոստիւններով թռչելը, գործողութեանց մանրամասների մէջ մտնելուց չափազանց խուսափելը, մի-երկու բնորոշ հերոսներով միայն զբաղուիլը չը պէտք է բացատրել այն բանով, թէ նորավէպի էութիւնից են բխում դրանք։ Փոքրածաւալ պատմուածքների մէջ ի հարկէ մանրամասըն ու յաջորդական անշտապ նկարագրութիւններ չեն կարող մտնել. բայց ինձ թւում է, որ այդ խնդրում ես ռոմանտիզմն է չարիքի գլխաւոր պատճառը. էջերի սակաւութիւնը արգելք չէ եղել, որ Մոպասանն ու Ալֆոնս Դոդէն հոյակապ պատկերներ գրէին։ Այն ինչ Զոհրապը, իբր քնարերգութեան հակում ունեցող հեղինակ, փոխանակ կեանքի և մարդկանց հոգու ծալքերը քրքրելու, սիրում է արագ թռչել դրանց վրայից, և ի հարկէ ի վնաս գործողութեան, անձերի և միջավայրի։

### Ոճը.

Զոհրապի տաղանդն ամենապայծառ կերպով արտայայտուած է նրա ոճի մէջ. այստեղ նա իսկապէս որ եզակի հեղինակ է։

Եթէ չափազիտութիւնը կարող է թողած լինել որևէ ազդեցութիւն հեղինակ Զոհրապի վրայ, անշուշտ դա այն չափուած

*) Հեղինակ Զոհրապին ճանաչելու համար՝ շահեկան կը լինի կարդալ նոյնպէս «Գրական Ասուլիսներ .Բ. Գրիգոր Զոհրապի նորավէպերը», Պոլիս, 1913 թ.

ձեռուած, կարելի է ասել, կշռադատուած բնոյթն է, որով անհրաժեշտ բառերը միանալով անհրաժեշտ բառերին՝ հակիրճ և լրիւ արտայայտում են նրա միտքը։ Բայց մի մեծ վտանգ է լինում սովորաբար նմանօրինակ սեղմութեան մէջ, չոր ու ցամաք լինելու վտանգը, որ մի այլ, նուազ տաղանդաւոր մարդու կարող էր մղել դէպի այն ազազուն ոճը, որով շարադրւում են, օրինակի համար, օրաթերթերի լուրերի բաժինները։ Ըստ իս, քնարերգութեան հակումը, որ գտանք Զոհրապի մէջ, բարեխառնել է նրա ոճը նազանքով ու ճկունութեամբ և ստացուել է գրելու մի ձև, որը կարելի է համեմատել Դամասկոսի այն սքանչելի սուրերին, որոնք պողպատից լինելով հանդերձ կարող են աղեղի պէս կորանալ՝ պահելով սակայն հարուածի ույժը։

Աւելի զարմանալին կայ դեռ. Զոհրապի ոճը նաև շատ պարզ է. ոչ դժուարին բառեր, ոչ հազուագիւտ դարձուածքներ, ոչ պատկերաւոր լինելու յաւակնութիւն կամ յերիւրանքներ, ոչ. գրեթէ անպաճոյճ է այդ ոճը, շատ հեշտութեամբ, նոյնիսկ անփոյթ կերպով գրուածի տպաւորութիւն թողնող, այսինքն անբռնազբօսիկ է, որովհետև մի խելացի միտք ղեկավարում է նրա նախադասութիւնները, որոնք միայն մի նպատակ ունին՝ սեղմ, լրիւ ու ճկուն լինել՝ մշտապէս ուշադիր պահելու համար ընթերցողին։

Եզրակացութիւն.

Մեր բոլոր ասածներից հետևում է, որ շատ արժէքաւոր հեղինակ է Զոհրապը. տաճկահայ արձակի և մասնաւորապէս նորավէպի վարպետներից մէկն է նա, որի երկերը ռոմանտիզմից ռէալիզմ անցնելու փոխանցման շրջանն են նշանակում. հետևաբար մեր գրականութեան բնաշրջման մէջ որոշ և կարևոր դեր են կատարել։

Բացի այս՝ նա իր ժամանակի և միջավայրի ցայտուն արտայայտութիւնն է՝ սնուած նաև ֆրանսական ոգով. նրա երկերը նաև պատմական նշանակութիւն ունին մեզ համար։

Այդ երկերը շատ հրահանգիչ են մանաւանդ մեր հեղինակների համար, որովհետև պարունակում են մի քանի գլուխ-գործոցներ և արտայայտութեան այնպիսի կորով, որը աւելորդաբան արևելցիներիս համար իրօք որ քննադատի դեր կարող է կատարել՝ հակիրճ խօսել և հակիրճ գրել սովորեցնելու մեզ։

Ինչ վերաբերում է Զոհրապի գաղափարներին՝ պէտք է ասել, որ նա լինելով սկեպտիկ ու ներողամիտ, անշուշտ մեր բարքերի ու հայեացքների մէջ որոշ մեղմութիւն է մտցնելու՝ սիրելի դարձնելով մանաւանդ անկեղծութիւնը այս աշխարհում, ուր առանց այն էլ իրերը մեծ բան չարժեն։

Նրա գրական թերութիւններն անգամ հրահանգիչ են, քանի որ իրենց ներկայութեամբ կարծես մասամբ պարզում են նրա ընտիր պատմուածքների ներքին պատճառները, որոնք իրօք որ ուսումնասիրութեան առատ նիւթեր են պարունակում մանաւանդ արուեստի տեսակէտից,

(Վերջ)

Մ. Մատէնճեան

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

Ախալցխա, 12 յունուարի

—Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղի Որբանոցի օգտին, նոյեմբերի 20-ից մինչև այսօր նուէրներ տուել են հետևեալ անձեր՝ պ. Ս. Սվաղճեան՝ 8 ռ., Դ. Խաչատրեանի տան սեղանակիցները 12 ռ., Յ. Ճերմակեանի միջոցով, Յար. Կոլոբոդոյեանի տան խնջոյքում հաւաքուած 22 ռ., տ. Վարդուհի և Արշակ Վիրաբեաններ, իրենց վաղամեռիկ Ստեփանիկի յիշատակին 100 ռ., Յ. Բէշիշեան իւր վաղամեռիկ զաւակների՝ Զապէլի և Շահէնի յիշատակին 100 ռ., հանգուցեալ Աննա Մուրադեանի ժառանգները, Բորժոմից, 50 ռ., Մ. Քուփալեան, իւր հանգուցեալ հօր՝ Գր. Քուփալեանի յիշատակին 100 ռ., տ. Մ. Քուփալեան նոյնի յիշատակին 50 ռ., տ. Աշխ. և Դաւիթ Քուփալեաններ նոյն հան. յիշատակին 100 ռ., Զ. Խաչկավանքցեանի ձեռքով Մին. Մինասեանի տան խնջոյքում հանգանակած 40 ռ., Ս. Սվաղճեան 1 ռ., Ստ. Պետրոսեան, (շռանիկ) բամբագործ, որբերի առնածառի համար 50 ռ., տ. Շ. Մարուքեան, նոյն նպատակին 30 ռ., տ. Կազմարարեան 10 ռ., Մկ. Մատթէոսեանի ձեռքով՝ Թ. Վարդապետեանի և օր. Շ. Զարխճեանի նշանդր. հանդիսին հաւաքած 17 ռ., Առ. Ղազազեան 5 ռ., աշակերտներ՝ Ղ. Աղնաւուրեան և Գր. Սաղաթէլեան 2 ռ., հայ զինուորներ՝ Ա. Պետրոսեան և Խ. Շիրինեան 1 ռ. 50 կ., Հմ. Մամիկոնեան 3 ռ., Հաջի Լևոն Խրզարճեանի միջոցով՝ Ղազ. Պապոյեանի տան խնջոյքում հանգանակած 43 ռ., Ալ. Ստեփանեանի միջոցով իւր եղբօր՝ Միսոյի տան խնջոյքում հանգանակած 50 ռ., տ. Սոփիա Սվաղճեան 3 ռ. 50 կ., Կ. Թէխմիշճեան 10 ռ., Յ Ճերմակեանի միջոցով Խ. Թիրաքեանի քրոջ նշանդր. հանգանակած 13 ռ. 20 կ., Ս. Խնոցեանի միջոցով Թ. Վարդապետեանի տան խնջոյքում հանգանակած 14 ռ. 50 կ., պ. Համբ. և Արամ Մահտեսի-Պօղոսեան-Քուփալեանի յիշատակ իւրեանց տատի՝ Հռիփսիմէի 50 ռ., Հ. և Բ. Այվազեան մի գառ, տ. Շ. Մովսիսեան Ծննդեան երեկոյեան որբերին նուիրած պիրոգներ (շաքարահաց), տ. Աշխ. Մովսիսեան 1 արկղ խնձոր և խաղալիքներ, օր. Ա. Պետրոսեան 3 զոյգ գուլպայ և քաղցրեղէն, Ե. Տարախճեան և Ս. Զարխճեան իրանց «Կինօ-Պալաս» թատրոնում Նոր-տարուայ օրը որբերին ձրի հրաւիրելու և այլն նուէրների առթիւ Որբախնամ Մասնախումբս յայտնում է իւր շնորհակալութիւնը, ինչպէս քաղաքիս Հայ-կանանց Բար. Ընկ.-եան, որ որբերին ամսիս 7-ին առանձին հանդէս կազմելով հիւրասիրեցին և անչափ ուրախացրին տարաբախտ մանուկներին։ Մասնախումբս իւր սեպուհ պարտքն է համարում յայտնել իւր շնորհակալութիւնը օրիորդներ՝ Վ. և Իսգ. Մնացականեաններին, Շ. Աղնաւուրեանին, Աստղիկ Ղույումջիբաշեանին, պ.պ. Մ. Խաղադորդեանին, Ար. Անիտոնեանին, Ս. Սվաղճեանին, Հմայեակ Խաչատրեանին, Յովհ. Բեթանեանին, Յ. Իգիթեանին, Մ. Ստեփանեանին և այն երիտասարդներին ու աշակերտներին, որոնք այս Ծննդեան երեկոյեան քաղաքումս, Որբանոցիս օգտին խումբ խումբ «Աւետիս» շրջեցին, որից արդիւնք ստացուեց 802 ռ. 10 կոպէկ։

Մասնախմբի Նախագահ՝
Խ. Թէխմիշճեան

Շնորհակալութեամբ ստացանք Գորու Ախալքալաք գիւղի հայոց ծխական դպրոցի օգտին՝

Արտէմ Նազարեանից 100 ռ., Միլիքեանից իւր դստեր Սաթենիկի յիշատակին 10 ռ., Տ. Ե. Միսկինեանից իւր մօր՝ Աննայի և եղբօր՝ Յովհաննէսի յիշատակին 20 ռ., Ալ. Մամասախլեանցից իւր մօր՝ Բարբարէի յիշատակին 10 ռ., Ալ. Առաքելեանից մի գրասեղանի գին 10 ռ., Օ. Օքրոեվի յիշատակին 5 ռ.։

Աւ. ուսուցիչ՝ Յար. քահ. Միրիմանեանց

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 7

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

№ 3

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

Անուանացուցակ Դիլիջանի Հ. Կ. Կոմիտէի V-րդ որբանոցի որբերի

1 Նոյեմբերի 1916 թ.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ծննդավայրը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|
| 41 | Պոյաճեան Հմայեակ | 15 | Բիթլիս | այո | |
| 42 | Խարդգողեան Երուանդ | 15 | » | » | |
| 43 | Քիւրքջեան Արամ | 13 | » | » | |
| 44 | Կարապետեան Միհրան | 13 | Վան-Ամենաշատ | » | |
| 45 | Գրիգորեան Ներսէս | 13 | » Մոկս | » | |
| 46 | Սարտիրոսեան Յակոբ | 13 | » Ծւստան | » | |
| 47 | Ալէքսանեան Սուրէն | 12 | Բիթլիս | » | |
| 48 | Կարապետեան Արսէն | 8 | Վան-Ամենաշատ | » | |
| 49 | Յարութիւնեան Զօհրապ | 11 | » Մոկս | » | |
| 50 | Ռուբէնեան Արսէն | 12 | Պաշկալա | » | |
| 51 | Արզարեան Յակոբ | 12 | Քեաւաշ | » | |
| 52 | Վարդանեան Աղամիր | 10 | Գուլամերիկ | » | |
| 53 | Յովհաննիսեան Գուրգէն | 12 | Մոկս | » | |
| 54 | Կարապետեան Անդրանիկ | 11 | Բիթլիս | » | |
| 55 | Գէորգեան Գուրգէն | 9 | Վան | » | |
| 56 | Խալաթեան Վարդան | 10 | » | » | |
| 57 | Պօղոսեան Պետրոս | 11 | Արճակ | » | |
| 58 | Գրիգորեան Մխիթար | 12 | Բաղէշ | » | |
| 59 | Մարկոսեան Մկրտիչ | 14 | Վան | » | |
| 60 | Սիմէոնեան Գեղամ | 12 | Բիթլիս | ոչ | |
| 61 | Աստուատուրեան Ազգանուշ | 13 | Կուլթիկ | այո | |

Անուանացուցակ Դիլիջանի Հ. Կ. Կոմիտէի VI-րդ որբանոցի որբերի

Նոյեմբերի 1 ին 1916 թ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Աւագեան Սիրանուշ | Ս. Թաթոս | ոչ | 5 | ոչ |
| 2 | Աբրահամեան Շուշանիկ | Վան — | » | 5 | „ |
| 3 | Աբրահամեան Սրբուհի | » —Հերէրին | „ | 6 | հայր |
| 4 | Արմենակեան Ֆատուլի | Բաղէշ | » | 6 | ոչ |
| 5 | Բենիամինեան Զարուհի | Վան-Պատակ-Նյ | » | 4 | » |
| 6 | Գէորգեան Քիշմիշ | ? | › | 4 | » |
| 7 | Մարգարեան Դիլբար | ? | › | 4 | » |
| 8 | Մարտիրոսեան Վանուհի | — Սեգաւառ | » | 6 | » |
| 9 | Միհրանեան Սիրուն | Վան-Աւերակի | » | 5 | „ |
| 10 | Վարդանեան Նուարդ | Կանգվառ | » | 6 | » |
| 11 | Մարտիրոսեան Դալալ | Կառկառ | „ | 6 | հայր |
| 12 | Կարապետեան Աղնիւ | » | » | 6 | ոչ |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 13 | Առաքելեան Զարէ | Վան-Կոճէտ | ոչ | 5 | ոչ |
| 14 | Պօղոսեան Սրբուհի | » — Շատախ | » | 7 | » |
| 15 | Արսէնեան Սիրուն | » » | » | 5 | » |
| 16 | » Պայծառ | — — | » | 6 | » |
| 17 | Եղոյեան Մարիֆաթ | — — | » | 6 | » |
| 18 | Սեդրաքեան Սրբուհի | Վան — | » | 5 | » |
| 19 | Թորոսեան Կաքաւ | » — Կարճկան | » | 4 | » |
| 20 | Գուլոյեան Վարսենիկ | ? | » | 4 | » |
| 21 | Սարգսեան Կոլեա | ? | » | 5 | » |
| 22 | Գէորգեան Եալտուզ | — Խզլու | » | 5 | » |
| 23 | Սարգսեան Ազօ | — Գերբեր | » | 5 | » |
| 24 | Խաչատուրեան Տաճատուհի | — Ղարս | » | 5 | » |
| 25 | Միսակեան Զուէ | — ? — | » | 5 | » |
| 26 | Ապրիկեան Փափագ | Մոկս-Աշէն | » | 16 | » |
| 27 | Գէորգեան Արմենուհի | » | » | 15 | » |
| 28 | Մովսէսեան Սատաֆ | | » | 15 | » |
| 29 | Աւագեան Լուսիկ | Ս. Թաթոս | այո | 13 | » |
| 30 | Ղուկասեան Սղանի | Հաշփշատ | ոչ | 13 | » |
| 31 | Տէր-Մանուէլեան Եղիսաբեթ | Ուրանց | այո | 13 | » |
| 32 | Նազարեան Շուշան | Կարճկան | ոչ | 12 | » |
| 33 | Տէր-Վարդանեան Հայկանուշ | Փերան | » | 10 | » |
| 34 | Ղազարեան Նուարդ | Վան | այո | 14 | » |
| 35 | Մանուկեան Գեղանուշ | » | » | 14 | » |
| 36 | Յակոբեան Սիրանուշ | Ֆարման | ոչ | 6 | » |
| 37 | Մուրադեան Սինամ | Վան | » | 14 | » |
| 38 | » Մայրանուշ | Վերինկաթնեց | » | 5 | » |
| 39 | Աբրահամեան Շուշան | Վան | » | 3 | » |
| 40 | Նազարէթեան Մայրանուշ | » | » | 4 | » |
| 41 | Աբրահամեան Շուշիկ | » | » | 4 | » |
| 42 | Շահինեան Արամ | Կարճկան | » | 5 | » |
| 43 | Ամրոյեան Հրաչեայ | Մուշ | » | 6 | » |
| 44 | Աւետիսեան Իփիթ | Բաղէշ | » | 5 | » |
| 45 | Գէորգեան Ֆարանդ | | » | 6 | » |
| 46 | Գիւլազիզեան Փանոս | Վան | » | 4 | » |
| 47 | Բողոյեան Կրկօ | Մուշ | » | 5 | » |
| 48 | Դաւթեան Վարդան | — | » | 6 | » |
| 49 | Կարապետեան Շաքրօ | Բաղէշ | » | 6 | » |
| 50 | Մկրտչեան Արտաշէս | Մուշ | » | 5 | » |
| 51 | Մանուկեան Ազատ | Կաւկաս | » | 5 | » |
| 52 | Մովսէսեան Համբարձում | — | » | 4 | » |
| 53 | — Բարգէն | — | » | 4 | » |
| 54 | — Նիկողայոս | — | » | 3 | » |
| 55 | — Համբարձում | — | » | 3 | » |
| 56 | Շաքրոյեան Մանուկ | Նորաշէն | » | 6 | » |
| 57 | Սրափեան Գալուստ | Թէրջան | » | 6 | » |
| 58 | Յարութիւնեան Արսէն | — | » | 5 | » |
| 59 | Յակոբեան Սիմէոն | — | » | 6 | » |
| 60 | Սահակեան Եղիշէ | Կարճկան | » | 4 | » |
| 61 | Յակոբեան Արշակ | Չրգիոէ | » | 6 | » |
| 62 | Սիմոնեան Մէլօ | » | » | 4 | » |
| 63 | Պետրոսեան Գաբրիէլ | » | » | 4 | » |
| 64 | Յովհաննիսեան Ազամիր | » | » | 4 | » |

Անուանացուցակ Դիլիջանի Հ. Կ. Կոմիտէի VII-րդ որբանոցի որբերի

Նոյեմբերի 1 ին 1916 թ.

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | Մուրադեան Սիրանուշ | Վան-Սւանց | 11 | այո |
| 2 | Մկրտչեան Ռէբեկա | Կարճկան Փրխուս | 11 | » |
| 3 | Սեդրաքեան Սաթենիկ | Գաւաշ-Նարեկ | 9 | » |
| 4 | Մանուկեան Գինովարէ | Կարճկան-Ուրան | 13 | » |
| 5 | Սարգսեան Մարգարիտ | » -Խոսս | 12 | » |
| 6 | Յակոբեան Վարդանուշ | Փախներ | 13 | » |
| 7 | Գէորգեան Սիսէ | Բաղէշ-Հանդ | 11 | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 8 | Պետրոսեան Սաղիկ | Վան-Սւանց | 6 | ոչ |
| 9 | Եղիազարեան Անդրանիկ | Մուշ-Խոշգեալդի | 13 | այո |
| 10 | Մովսէսեան Ղազար | Գաւաշ Ընձակ | 10 | » |
| 11 | Մովսէսեան Վարդան | Կարճկան-Գոմս | 10 | » |
| 12 | Սողոմոնեան Խաչատուր | Բերկրի Պզտիկ գիւղ | 13 | » |
| 13 | Տիգրանեան Մելքոն | Վան Աւան | 13 | „ |
| 14 | Մովսէսեան Արմենակ | Մուշ Լիզ | 11 | » |
| 15 | Մելոյեան Մուշեղ | Ադկոն | 10 | » |
| 16 | Աւետիսեան Գաբրիէլ | Հայոց-Ձոր-Արտանենց | 14 | » |
| 17 | Գրիգորեան Եալտուզ | Գաւաշ-Փախնէր | 14 | » |
| 18 | Յովհաննիսեան Արամ | Կառկառ | 6 | ոչ |
| 19 | Գասպարեան Սեդրաք | Խիզան | 14 | այո |
| 20 | Մարտիրոսեան Գէորգ | Մուշ-Հանդկոն | 12 | » |
| 21 | — Տիգրան | — | 2 | » |
| 22 | Ղազարեան Գուգրէթ | Խլաթ-Կլուաթ | 9 | „ |
| 23 | Թովմասեան Խաչատուր | Խիզան-Խակե | 9 | » |
| 24 | Մանուկեան Մարօ | Հանկաւան | 7 | ոչ |
| 25 | Սիմէոնեան Վարդան | Կարճկան-Սմզէօն | 10 | այո |
| 26 | Փելոսեան Տիգրան | Էրզրում | 7 | ոչ |
| 27 | Մխիթարեան Նունուֆար | Բաղէշ-Կարմունճ | 12 | այո |
| 28 | Մհերեան Լուսիկ | Գորդիձոր | 7 | ոչ |
| 29 | Ղազարեան Թոչնիկ | Վան-Ալիւր | 10 | այո |
| 30 | Յարութեան Գալուստ | Մոկս-Լճան | 12 | » |
| 31 | Շաքրոյեան Ղուպար | Մուշ-Նորատեն | 11 | » |
| 32 | Աբրահամեան Մարօ | Գաւաշ-Մոխրաբերդ | 12 | » |
| 33 | Պօղոսեան Մկրտիչ | Վան | 12 | » |
| 34 | Բարսեղեան Եսայի | Արճէշ-Ականց | 8 | ոչ |
| 35 | Կուլոյեան Գրիգոր | Հաճիվար | 8 | „ |
| 36 | Մարկոսեան Ալթուն | Շատախ | 6 | „ |
| 37 | Մկրտչեան Մովսէս | Մուշ-Խոշկեալդի | 10 | այո |
| 38 | Աւետիսեան Անդրէաս | Բաղէշ-Մենք | 10 | » |
| 39 | Սարգսեան Վարդանուշ | Վան-Շուշանց | 6 | ոչ |
| 40 | Վարդանեան Ղազար | Մուշ | 6 | » |
| 41 | Յակոբեան Անահիտ | Սալմաստ | 12 | այո |
| 42 | Գալուստեան Անթառամ | Մոկս Սմկա | 10 | ոչ |
| 43 | Յարութեան Արեգնազան | Ալաշկերտ | 8 | » |
| 44 | Պետրոսեան Երանուհի | Ջիչան | 8 | » |
| 45 | Յարութեան Կարապետ | Շատախ-Թաղ | 7 | » |
| 46 | Մովսէսեան Պայծառ | Գաւաշ-Փաթականց | 9 | „ |
| 47 | Գէորգեան Արամ | Վան-Ծայտար | 12 | այո |
| 48 | Վահանեան Աննա | Բաղէշ-Օրմի | 11 | ոչ |
| 49 | Սեդրաքեան Արաքսի | Գաւաշ-Նարեկ | 13 | այո |
| 50 | Յովհաննիսեան Գաբրիէլ | Վան-Այգեստան | 7 | ոչ |
| 51 | Տէր-Պետրոսեան Աղաւնի | Կարճկան-Փրխուս | 12 | այո |
| 52 | Վարդանեան Սաթենիկ | Վան-Կզզի | 14 | » |

## Անուանացուցակ Դիլիջանի Հ. Կ. Կոմիտէի VIII-րդ որբանոցի որբերի

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | Ալեքսեան Արուսեակ | Թուրքէլէն | ոչ | 6 |
| 2 | Պետրոսեան Վարդանուշ | Խնուսց | » | 9 |
| 3 | Մնացականեան Անթառամ | Ալիտ | » | 7 |
| 4 | Գէորգեան Սուսան | Հիւլու | » | 10 |
| 5 | Տիգրանեան Բուրաստան | Արճէշ | » | 8 |
| 6 | Մելքոնեան Սէդէֆ | Խնուս | » | 7 |
| 7 | Բարսեղեան Շուշանիկ | Հէյկր | » | 10 |
| 8 | Մելքոնեան Գայիանէ | Ալջաւազ | » | 11 |
| 9 | Շահինեան Կարաւ | Գաւաշ | այո | 11 |
| 10 | Պօղոսեան Եալտուզ | Խուրկում | ոչ | 11 |
| 11 | Աւետիսեան Գիւլզէյազ | Էրզրում | „ | 13 |
| 12 | Աստուածեան Մարիամ | Հէնկլշաւան | „ | 13 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 13 | Գայոսեան Շուշանիկ | Կարճկան | ոչ | 10 |
| 14 | Յովհաննիսեան Գինովարէ | Կարճկան | այո | 10 |
| 15 | Յարութիւնեան Բաղդասար | Թիմար | ոչ | 5 |
| 16 | Մուշեղեան Եղիշէ | Խաչէն | » | 7 |
| 17 | Յակոբեան Գառնիկ | Վան | » | 6 |
| 18 | Յակոբեան Անդրանիկ | Բիթլիս | այո | 9 |
| 19 | Կարապետեան Մանուէլ | Ալիւր | ոչ | 7 |
| 20 | Մկրտչեան Անդրէաս | Բիթլիս | » | 8 |
| 21 | Պետրոսեան Նշան | Հայոց Ձոր | » | 9 |
| 22 | Վարդանեան Մելքոն | Մոկս | » | 8 |
| 23 | Մինասեան Յովհաննէս | Կարճկան | » | 6 |
| 24 | Գրիգորեան Ազատ | Հայոց Ձոր | » | 9 |
| 25 | Ստեփանեան Արսէն | Բիթլիս | » | 10 |
| 26 | Մինասեան Միհրան | Կարճկան | » | 7 |
| 27 | Սեդրաքեան Մովսէս | Մոկ | այո | 10 |
| 28 | Մկրտչեան Ղազար | Ալջևազ | ոչ | 10 |
| 29 | Ալէքսանեան Համբարձում | Արճէշ | » | 10 |
| 30 | Տէր-Թովմասեան Լևոն | Գաւաշ | » | 10 |
| 31 | Աւետիսեան Անդրանիկ | Կարճկան | » | 10 |
| 32 | Խաչատրեան Ղուկաս | Ալջևազ | այո | 11 |
| 33 | Թորոսեան Վահան | Կարճկան | » | 12 |
| 34 | Մանուկեան Յակոբ | Թիմար | ոչ | 12 |
| 35 | Յովհաննիսեան Սեդրաք | Կարճկան | » | 12 |
| 36 | Աստուրեան Գէորգ | | այո | 12 |
| 37 | Յարութիւնեան Ռուբէն | Ալջևազ | » | 13 |
| 38 | Խաչատրեան Սարգիս | Բիթլիս | » | 11 |
| 39 | Կարապետեան Զաքար | Կարճկան | » | 12 |
| 40 | Յարութիւնեան Աւետիս | Թիմար | ոչ | 12 |
| 41 | Մարգարեան Կարապետ | Նորաշէն | » | 8 |
| 42 | Ասլանեան Յակոբ | Գաւաշ | այո | 14 |
| 43 | Մկրտչեան Վարդան | | ոչ | 12 |
| 44 | Ալէքսանեան Համբարձում | Բիթլիս | " | 8 |
| 45 | Յովհաննիսեան Առաքել | Բուլանղ | » | 5 |
| 46 | Տէր-Պօղոսեան Ստեփան | Վան | այո | 12 |

Անուանացուցակ Դիլիջանի IX-րդ որբանոցի որբերի

30 Նոյեմբերի 1916 թ.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Արմաղան | Վան | այո | 10 | մայր | Երևան |
| 2 | » Աննիկ | Վան-Կանգվար | » | 10 | հայր | Ամերիկա |
| 3 | » Սեդրաք | Վան-Խոժա | » | 12 | — | — |
| 4 | » Գառնիկ | Վան-Թաղ | ոչ | 6 | — | — |
| 5 | Արշակեան Աղաւնի | Հէր-Մէր | » | 5 | այո | — |
| 6 | » Մարգարիտ | Թէրջան | » | 6 | մայր | Սարիղամիշ |
| 7 | Բարսեղեան Արամ | Մաճառ | » | 6 | մայր | Դիլիջան |
| 8 | Բաղդասարեան Սառա | Վան-Աւերակի | " | 11 | մայր | Էջմիածին |
| 9 | " Քրիստինէ | Վան | այո | 13 | — | — |
| 10 | Գրիգորեան Հայկօ | Վան-Շուշանց | ոչ | 13 | այո | Էջմիածին |
| 11 | Գրիգորեան Ազնիւ | Մանազկերտ | » | 13 | — | — |
| 12 | » Վարդանուշ | Ալմաստ | » | 12 | — | — |
| 13 | Գրիգորեան Գասպար | Բիթլիս | " | 11 | — | — |
| 14 | Գէորգեան Արսէն | Վան-Խաչէն | » | 11 | — | — |
| 15 | Գէորգեան Սիրարփի | Վան-Կափ | » | 8 | հայր | Էջմիածին |
| 16 | Գէորգեան Մարինոս | Վան-Գոմ | այո | 11 | այո | Սալմաստ |
| 17 | Գէորգեան Աղաւնի | Վան | ոչ | 6 | — | — |
| 18 | Գաբրիէլեան Գրիգոր | Վան-Ալիւր | » | 12 | հայր | Ալիւր |
| 19 | Գիւլազիզեան Լուսիկ | Վան | » | 7 | — | — |
| 20 | — Գեղամ | — | " | 4 | — | |